1916 № 24.—Յունիսի 12 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 5 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արտաքրաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбавaберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





## Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատի վրայ այս շաբթուայ ընթացքում ուշագրաւ դէպքեր տեղի չեն ունեցել։ Թուրքերի մի շարք յարձակումները ծովամերձ շրջանում (Պլատանա քաղաքի շուրջը) և Գիւմիւշխանէի ուղղութեամբ յետ են մղուած։ Պաշտօնական հաղորդագրութիւնները յիշատակում են ռուսաց հետախոյզ խմբերի մի շարք յաջող գործողութիւնները, որոնք, ի հարկէ, էական փոփոխութիւն չեն մտցնում պատերազմի դաշտի մէջ։

Պարսկական ճակատում այս շաբաթ ևս թշնամին յարձակումներ էր գործում ռուսաց վրայ թէ Բաղդադի և թէ Մոսուլի ուղղութեամբ (Ռևանդուզի շրջան)։ Առաջին գծի վրայ թիւրքերին մինչև անգամ յաջողուել է կարճ ժամանակամիջոցով գրաւել Սերպուլ քաղաքը։ Որքան էլ այս ճակատում թիւրքերը մինչև օրս դեռ մի առանձին յաջողութիւն չեն ունեցել,

### ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում այս շաբաթ ևս շարունակուեց ռուս զօրքերի առաջխաղացութիւնը։ զօրապետ Պֆլան-

ցէր-Բալտինի 200 հազարանոց բանակը մօտ 50,000 գերի և առնուազն նոյնքան էլ սպանուած և վիրաւոր տալով՝ քայլ առ քայլ նահանջում է դէպի Սերետի աջ ափը։ Ռուսներն այստեղ գրաւել են Բուկովինայի մայրաքաղաք Չերնովիցը և հարաւարեւմտեան ուղղութեամբ առաջանալով՝ հասել մինչև Ստորոժինեց գիւղը, որ գտնւում է վերոյիշեալ գետի ափին։

Կենտրոնական գծերի վրայ աւստրիացիք համեմատաբար ուժեղ դիմադրութիւն են ցոյց տալիս։ Բեն-Երմոլի և Բոթմէր զօրապետները, ունենալով իրենց տրամադրութեան տակ մօտ 10 կորպուս և կռթնած Ստրիպա գետի առաջնակարգ ամրութիւններին՝ արիւնահեղ կռիւներ էին մղում այս շաբաթ ռուսների դէմ։ Բայց այս գծի վրայ էլ աւստրիացիք ստիպուած եղան յետս ընկրկել և նոյն իսկ Ստրիպայի աջ ափին գտնուած ամրութիւններից շատերը զիջել ռուսներին։

Ամենից մեծ չափով այս արշաւանքների ժամանակ տուժել է Կովէլ-Սարնա երկաթուղու շուրջը տարածուած աւստրիական 180 հազարանոց բանակը, որ գործում է արքիդուքս Յովսէփ-Ֆերդինանդի ղեկավարութեամբ։ Այս բանակը գերիներ, սպանուածներ ու վիրաւորներ կորցրել է առնուազն իր կազմի 5/6-ը, կամ մօտ 15,000 մարդ։ Ջարդուած զօրքի մնացորդները չկարողանալով պաշտպանել Վոլինի շրջանը՝ անկարգ կերպով յետ են նահանջում։

Բուկովինայի, Գալիցիայի և Վոլինի կռիւների մէջ, սկսած մայիսի 22-ից մինչև յունիսի 3-ի գիշերը, ըստ պաշտօնական հաղորդագրութեան, աւստրիացիների կորուստն է.—3,350 գերի սպայ, 169,134 զինուոր, 198 թնդանօթ, 550 գնդացիր, 119 ռմբարկղ, 34 պրոժեկտոր և բազմաթիւ այլ գործիքներ և մթերք։ Եթէ ի նկատի ունենանք, որ յունիսի 3-ից մինչև օրս էլ աւստրիացիք առնուազն 11 հազար գերի են ունեցել և բացի այդ՝ որ աւստրիացոց վիրաւորներն ու սպանուածները առնուազն 1½ անգամ շատ են գերիներից, պարզ կլինի, որ ռուսաց առաջխաղացութիւնը աւստրիացիներին նստել է 450—500 հազար մարդ։

Ռուսական ճակատի հիւսիսային գծերի վրայ գերմանացիք կենդանութեան ակներև նշաններ են ցոյց տալիս։ Այս շաբաթ Սմորգոնի մօտ (Վիլնա-Մինսկ երկաթուղի) ռուսաց դիրքերի վրայ յարձակման անյաջող փորձ ունենալուց յետոյ՝ նրանք բաւականանում են թնդանօթամարտով ռազմաճակատի հիւսիսային գծերում:

Ֆրանս-բելգիական ճակատում այս շաբաթ համեմատաբար խաղաղ անցաւ։ Անգլիական գծերի վրայ տեղի ունէին միայն սովորական թնդանօթամարտ, օդամարտ և ականամարտ։ Ֆրանսական գծերից կենդանութիւն էր նկատւում միայն Վերդէնի տակ և Վոգեզներում։ Երկու տեղում էլ գերմանացոց յարձակումները նախկին կորովը չունէին։

Իտալական ճակատում սկսեց զգալի դառնալ, որ ռուսները արևելքից ճնշում են գործ դնում աւստրիացիների վրայ։ Այս շաբաթ աւստրիացիները բացի մի երկու կէտից, ամենուրեք պաշտպանողական դրութեան են անցել և իտալացիներին էր անցել գործողութեանց ձեռներէցութիւնը։ Իտալացիք յաջող յարձակումներով սկսել են դուրս մղել աւստրիացիներին վերջին արշաւանքներին գրաւած դիրքերից։

### ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Բոլոր նշաններից երևում է, որ այս ռազմաբեմում մենք վճռական գործողութիւնների նախօրեակին ենք գտնւում։ Այդ գործողութիւնները հաւանօրէն արդէն սկսուած կլինէին, եթէ ռուսաց անսպասելի առաջխաղացութիւնը տակն ու վրայ չանէր թշնամիների ծրագրները։ Դէպքերի հասունանալու նշաններից մէկն էլ այն վճռական տոնն է, որով դաշնակիցները դիմում են յունաց կառավարութեանը պահանջելով ցրել զօրքը, փոխել մինիստրութիւնը, արձակել պառլամենտը և նոր ընտրութիւններ նշանակել ամբողջ ժողովրդի մասնակցութեամբ։

* *
*

## Ներքին տեսութիւն

### ՄԻ ՓՈՔՐԻԿ ԲԱՑԱՏՐՈՒԹԻՒՆ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ

—

Անցեալ շաբթուայ վերջին օրերին «Համբաւաբերի» խմբագիրը հարկադրուած էր մի կարևոր գործի համար կարճ ժամանակով բացակայել Թիֆլիսից։

Խմբագրի բացակայութեան այդ ժամանակամիջոցում, կիրակի օրը լոյս տեսնող «Համբաւաբերի» № 23-ի «Պոստարկղ» բաժնում, հակառակ մեր թերթի սկզբունքներին, Վաղարշապատից ստացած մի թղթակցութեան առթիւ տպուել է անախորժելի և լի անտեղի ակնարկներով պատասխան մեր արժանաւոր եպիսկոպոսներից մէկին՝ Բագրատ Սրբազանի հասցէին։

Խմբագրութիւնս, համարելով այդ դէպքը մի եզակի պատահականութիւն, ցաւ է յայտնում այդ մասին։

———

## «ՆՐԱՆՔ ՍՊԱՍՈՒՄ ԵՆ»

(Նոթեր հայ իրականութիւնից)

—

*Ստացւում են ամեն կողմերից հեռագիրներ, նամակներ և զեկուցումներ տաճկահայերի ներկայ կացութեան մասին։ Այդ բոլորը պտտւում է միևնոյն հարցի շուրջը. օգնութիւն, օգնութիւն և դարձեալ օգնութիւն։*

*Զեկուցումներից մինը վերջանում է այսպէս.*

*«Նրանք սպասում են»։*

*«Սպասում» են, ո՛վ. ջարդերից ազատուած հայ գաղթականների սովատանջ բանակները։*

*Զեկուցողը նկարագրում է կոտորածից ազատուած Անատոլիայի «դժոխային» կացութիւնը՝ որ կեանք է կոչւում։*

*Այդ շրջանի 60-70 հազար հայ բնակչութիւնից մնացել է ընդամենը մի քանի հազար հոգի, այն էլ աշխատանքի անընդունակներ, ծերեր, պառաւներ և քաղցից ու սարսափից ցնորուած մանուկներ։ Սրանք մի հրաշքով ազատուել են աղէտից, բայց այժմ գալարւում են սովի ու կարիքի անողոք ճիրաններում։ Մուրացկանութեան ուղու վրայ դրուած, նրանք տանջւում են ֆիզիկապէս և բարոյապէս, և նրանք սպասում են հարազատ ազգակիցների գթառատ վերաբերմունքին և կարեկցութեանը։*

*Նրանք, որոնք արեան հեղեղով բաց արին Հայաստանի նահատակութեան նոր էջեր, նրանք, որոնց ազատութեան յաւերժ սիրոյ առաջ գլուխ խոնարհեց քաղաքակիրթ մարդկութիւնը, այսօր վխտում են Կովկասի հայաբնակ վայրերում անվերջ բանակներ։*

*Ինչե՜ր չեն արել թիւրք և քուրդ գազանները տաճկահայ նահատակ ժողովրդի գլխին։*

*«Շատ մանուկների կապել են պարկերում ու ծովը նետել» —գրում է զեկուցողը։—«Շատերին բաժանել են իրենց մէջ իսլամացնելու համար, թլպատել են, թրքական աղօթքներ են սովրցրել, թրքական անուններ են դրել։ Հարկաւոր է նրանց ազատել, գտնել նուաճած վայրերում, խնամել, նրանց հայացնել»։*

*Եւ նրանք սպասում են.—բաւական չէ միայն ազատել, այլև հարկաւոր է նաև մտածել, որ «ազատուածները» աւելի չքաւոր դրութեան մէջ չընկնեն քան թէ չազատուածները։*

*Մենք ուրախանում ենք, երբ լուրեր են հասնում մեզ, որ մեր յաղթական բանակի Տաճկահայաստանի նորանուաճ զանազան վայրերում հայեր են կենդանի մնացել և կամ ազատուել բարբարոսների ձեռքից։*

*Բայց մոռանում ենք, որ ութեմն աւելացել է մերկերի և քաղցածների թիւը, որոնց հարկաւոր է խնամել, կերակրել, եթէ չենք ուզում Տաճկահայութիւնը բնաջինջ լինի։*

*Բաւական չէ մեր եղբայրներին թուրքի և քիւրդի ճիրաններից միայն ազատել, այլ հարկաւոր է և սովից։*

*Անսպառ ճիգ ու ջանք է հարկաւոր գործ թափել, որպէս զի կարողանանք վերաշինել Տաճկահայերի քայքայուած կեանքը։ Չը մոռանանք, որ Տաճկահայերի 80—90 տոկոսը սեփականատէրեր են եղել և կարողացել են մրցել տնտեսական կեանքում օտար մրցակիցների հետ։ Տնտեսական զարգացման չափով բարգաւաճած էր և հայ հասարակական կեանքը, դպրոցն ու մամուլը։ Օրինակ Տրապիզոնի հայերը պատերազմից առաջ ունէին մի քանի հայ թերթեր—«Պոնտոս», «Ջարհամ», «Խարիսխ», «Փեթակ»։ Հայ եկեղեցական ու վանական կալուածների արժէքը մի քանի միլիոնների էր հասնում։ Դպրոցների շէնքերը կարող էին օրինակելի պատճէնը դառնալ Ռուսաստանի շատ և շատ նախարարական դպրոցների։ Եւ այս բոլորը կորած է ընդմիշտ։*

*Պէտք է վերստեղծել Տաճկահայ կեանքը, նրա տնտեսականն ու բարոյականը, եթէ չենք ուզում որ Հայաստանը մի աշխարհագրական անուն մնայ, ինչպէս շատ անգամ են բարբանջել մեր դահիճները։*

*Նրանք սպասում են։* Գ. Օ.

---

## ԲԱՍԵՆԻ ՀԱՅԵՐԻ ՎԻՃԱԿԸ

*Հայ. կենտր. կոմիտէին անցեալ մայիսի 10-ին «Բասենի քաղաքացիական մարմնի» երկու անդամի մատուցած զեկուցագրից քաղում ենք հետեւեալ հրատարակութեան յարմար տեղեկութիւնները։*

—

*«Գաղթականութեան որոշ մասը, անցեալ տարի, ապրիլի վերջերին բնակութիւն հաստատելով տաճկական Բասենի գրաւուած մի քանի գիւղերում, ցանել էր չնչին քանակութեամբ ցորեն ու գարի։ Շնորհիւ անժամանակ ցանքսի և տարուայ աննպաստութեան՝ ստացուած բերքը հազիւ հազ բաւական եղաւ 5000 շունչ գաղթականներին մի ամիս ապրելու։*

*Անխուսափելի էր սովը։ Հենց այդ ժամանակ յարգւում է զինուորական բարձր իշխանութիւնից մեր միջնորդութիւնը, այն է՝ տալ գաղթականութեան աշխատանք ճանապարհների կառուցման կամ ռազմամթերքների տեղափոխութեան գործերում։ Այսպիսով գաղթականութիւնը բաւական վարձատրուելով մի կերպ պահպանեց իր գոյութիւնը։*

*Դեկտեմբեր ամսում, դադարելով առաջնակարգ դիրքերում աշխատելուց, ժողովուրդը ստացաւ նոյեմբեր և դեկտեմբեր ամիսների համար պետական նպաստը, որով ազատուեց սովից։ Նոյն միջոցին ստանում ենք Ղարսից Կ. Հ. Բ. Ը.-թեան միջոցով 500 հատ վերմակ, ներքնակ և զանազան հագուստեղէն և բաժանում գաղթականներին, ազատելով ձմրան ցրտերից։ Փետրուարի վերջերին, Տասնեակի կոմիտէի միջոցներից, Ղարսի վարչութեան միջոցով ստանում ենք թէյ և շաքար ու բանում Ղարաքիլիսայում թէյարան, որից օգտւում էին միմիայն նոյն գիւղի հասարակութիւնը և անցորդ զինուորներն ու գաղթականները. իսկ մնացած գիւղերի գաղթականութիւնը զրկւում էր. ուստի թոյլտուութիւն խնդրեցինք ու ստացանք, անխտիր բաժանել բոլորին թէյ, շաքար և այլն։*

*Փետրուարին, այսինքն Էրզրումի գրաւումից անմիջապէս յետոյ գաղթականութիւնը մեծ փութկոտութեամբ աշխատում է վերաշինել հայրենի տներ և բնակավայրեր ընտրել։ Առաջներում, երբ 5000 հոգի խմբուած էին մօտ 20 քրդական գիւղերում, և ապրում էին շատ սեղմ ու անյարմար վիճակում, շարունակ դիմում էին մեզ, խնդրում նոր գիւղեր հիմնելու։ Մեր պաշտօնական դիմումներն այդ առթիւ սկզբում անհետեւանք մնացին։*

*Վերջապէս յաջողուեց գաղթականներին Մժնկերտի շրջանի քաղաքացիական կառավարչից վկայականներ ստանալ, վերաբնակուելու թէ իրենց հայրենի և թէ քրդական ու թրքական գիւղերում։*

*Մարտից սկսւում է ներգաղթը. գալիս են Կաղզուանի, Ղարսի, Ալէքսանդրապոլի, Լոռու, Բորչալուի և ուրիշ շրջաններում պատսպարուածներ, գալիս են վառ յոյսերով, լի ոգևորութեամբ, հայրենի բնակատեղիները վերականգնելու։ Գաղթականութեան մի մասը, որ ունի աշխատող ձեռքեր, վերանորոգում է իր կիսաւէր պապենական տները կամ նորերը կառուցանում, իսկ որոնք աշխատող ձեռքերը պակաս են, հաստատւում են քրդական ու թրքական գիւղերում։ Այսպիսով գաղթականութիւնը տարածուելով՝ գիւղերի մեծ ցանցով պատում են ամբողջ Բասենի շրջանը՝ սկսած Դուաբոյնուի փեշերից, Արաքսի երկու ափերից մինչև Ռուս-Տաճկական սահմանագիծը։ Բնակութիւն են հաստատում մեր շրջանում և այն հին գաղթականները, որոնք զանազան ժամանակներում, խուսափելով տաճիկ բռնակալ վարչութիւնից, անցել են Ռուսաստան և գրուել են ռուսահպատակ։*

*Այժմ Բասենում հաշւում է մօտ 70 գիւղ և 2,000 երկու սեռ*

միշտ էլ անպարտաճանաչ են եղել և իրանց զաւակներին կանոնաւոր ու ըստ հարկին չեն ուղարկել դպրոց և միշտ խնայել նրա գոյութեան և յարատեւութեան համար նիւթական միջոցներ տալ իրանց գրպաններից: Գիւղացին իւր զաւակներին մեզանում դպրոց ուղարկում է, երբ գիւղական հողային աշխատանքները վերջացած են լինում և այն էլ երեխաների պարապ-սարապ ման գալուց ազատուելու համար, և հեռացնում է դպրոցից, հենց որ գարունը և հողային աշխատանքները սկսւում են: Նրանց պէտքը չէ, որ իր երեխան դեռ տարուայ դասընթացքը չէ վերջացրել, որ ուսումից յետ է մնում: Քանի քանի անգամ գիւղական ուսուցիչները դիմել են թէ հոգևոր իշխանութեան և թէ Կ. Հ. Բ. Ը.-թեան տեղական վարչութեան՝ միջոցներ գտնելու, որ աշակերտները տարուայ սկզբին հաւաքուեն դպրոց և հեռանան այնտեղից, երբ ուսումնարանական տարին վերջանայ, սակայն ոչ մի գործնական հետևանքի չեն հասել: Եւ ինչ անէ խեղճ ուսուցիչը. պարզ է, որ այդպիսի պայմանների մէջ նա ոչ մի արդիւնք չի կարող տալ: Դպրոցի տարուայ սկզբին յաճախում են 3 բաժանմունքի մէջ հազիւ 20—30 աշակերտ-աշակերտուհիներ. ուսուցիչը սկսում է նրանց հետ պարապել և անցնել, մի քանի օրից կամ շաբաթից յետոյ էլի 10—20 սան են գալիս, ուսուցիչը ստիպուած սկսում է սրանց պատճառով անցածը կրկնել. մի ամսից յետոյ գալիս է երրորդ խումբը, նոյն պատմութիւնը, և հազիւ նոյեմբերի սկզբներին բոլորը հաւաքւում են. իսկ տարին դեռ չը վերջացած հենց մարտի սկզբներին սկսում են նոյն կերպ խումբ խումբ յաջորդաբար չըգալ դպրոց, կամ գնալ մի քանի օր հողագործութեամբ պարապել և էլի գալ: Ի՞նչ անէ ուսուցիչը կամ վարժուհին: Եթէ կտրական միջոցներով պարտաւորացնես գիւղացոց, որ իրանց զաւակները ուղարկեն դպրոց տարուայ սկզբին և հեռացնեն անպատճառ վերջին, հակառակ դէպքում սպառնալով չընդունել նրանց, այդ դէպքում էլ աշակերտութեան 1/10-րդը անգամ չեն համաձայնւում գալ, որը երբէք ձեռնտու չէ դպրոցի նիւթական և նպատակի տեսակէտից: Իմ կարծիքով այսպիսի պայմանների մէջ գտնուող դպրոցների դպրոցական տարին պէտք է կարճացնել և մի տարուայ դասընթացքը անցնել երկու տարում: Ճիշտ է, թէև այդպիսով գիւղացու մանուկը մի երկու տարի կըկորցնի, սակայն գոնէ կարող կը լինի դասընթացքը լրիւ անցնել: Ես կարծում եմ, որ այսպիսի թերի և անկանոն երևոյթներ, բացի մեր գաւառից, տեղի են ունենում և ուրիշ շատ գաւառների գիւղերի դպրոցներում, ուստի անհրաժեշտ է այդ կարևոր խնդրի մասին լսել և աւելի ձեռնհաս ու տեղեակ մանկավարժների կարծիքները:

Շնորհիւ մեր գիւղացութեան մեծամասնութեան դպրոցի կարիքի անգիտակցութեան, մեր գաւառի 20-ից աւելի հայ-լուսաւորչական և հայ-կաթոլիկ (միւսները թրքաբնակ են և մասամբ էլ վրացաբնակ) գիւղերից միայն վերոյիշեալ երկու գիւղերում կան ծխական դպրոցներ: Պարզ է, որ եթէ Բար. Ը.-թեան յատկացրած նպաստը չըլինէր, այդ էլ չէր լինի: Անցեալ տարիները գաւառիս Սաղէլ և Փոքր-Պամաճ գիւղերի մէջ Բար. Ընկերութեան և Բագուայ Կուլտուրական Միութեան յատկացրած նպաստներով բացուեցին ծխական դպրոցներ, սակայն գիւղացիք, դպրոցի մնացած հարկաւոր ծախսերը, որ հազիւ տարեկան աշակերտական թոշակների հետ 100—150 ռուբլի է անում հոգալու համար, չկարողացան հաւաքել և վճարել, ուստի կիսակատար մնաց և յաջորդ տարիներումը երկուսն էլ փակուեցին: Եթէ գիւղացիք սրտով կամենան, կարող են առանց դրսի օգնութեան էլ իրանց միջոցներով դպրոցներ պահել, սակայն չեն անում, չեն ծախսում, որովհետև դպրոցի կարիքը դեռ չեն զգում, չեն ըմբռնում:

Թ.

---

## ԱԶԱՏՈՒԱԾ ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

Ներկայ ռուս-տաճկական պատերազմն եղաւ աւերիչ իր հետևանքներով հայ ժողովրդի համար: Այժմ ռուս զօրքի յառաջխաղացման հետ միասին հետզհետէ գալիս հաւաքում են տաճկական սրից ու աքսորից ազատուած և ցիր ու ցան եղած բեկորները: Երբ ռուսաց բանակը նուաճեց Սպիրի և Կիսկիմի շրջանները, բանակում գտնուած հայ զինուորների աջակցութեամբ սկսուեցին հաւաքուել կոտորածից ազատուած հայ բնակչութեան մնացորդները՝ գլխաւորապէս կանայք ու երեխաներ, որոնցից բոնի իսլամացածներն ուղարկուեցին Օլթի:

Ես անցեալ մարտի 2-ին հեռագրով տեղեկութիւն տալով Հ. Կենտ. Կոմիտ. այս մասին՝ խնդրեցի ինձ յայտնել հետագայ գործողութեան ծրագրի մասին և միևնոյն ժամանակ դիմելով շրջանիս կառավարչին, խնդրեցի աջակցութիւն՝ ընդունելու և տեղաւորելու այդ արկածեալներին, մինչև Հ. Կենտ. Կոմիտէից կարգադրութիւն ստանալս: Վերջինիս ցոյց տուած ջերմ աջակցութեան շնորհիւ գաղթականներին տեղաւորեցի տեղիս «Զեմսկիյ Սաիւզ»-ի ապաստարանում մինչև մարտի 16-ը: Մինչև այդ ժամանակամիջոցը գաղթականներին հարցուփորձ անելով իմացայ իրենց ազգականների տեղերը, որոնք ցրուած են Ռուսաստանի զանազան քաղաքներում, Խարկով, Ամրոսևկա, Կրիշինոյ, Լիման, Ժելդերիքայ, Ավդէևկա, Դերնի, Ելիսավէտգրադ, Մագելևկա, Նովորոսիյսկ, Սիմֆերոպոլ, Խարցինսկ, Վերխովկա, Զուփլինօ, Միլերովօ և այլ վայրեր, հեռագրով հաղորդեցի գալու և ազգականներին տանելու: Բայց որովհետև նրանց Օլթի գալը կարող էր թոյլտւութիւն ստանալու արգելքի պատճառաւ դժուարանալ, ուստի ես գաղթականներին տեղափոխեցի Ալէքսանդրապոլ, ուր նրանք ազատ կարող էին միմեանց հանդիպել:

Շատ շատերն էլ շտապեցին Օլթի՝ գնալու անձամբ որոնելու ազգականներին: Քանի որ նոր գրաւուած վայրերը գնալը արգելուած է առանց շրջանի հրամանատարի թոյլտւութեան, ես գաւառապետի աջակցութեամբ դիմումն էի անում ուր հարկն է, թոյլտւութիւն խնդրելով շրջել գաւառը: Առաջինկայ թոյլտւութիւնը խմբերին առաջին-9 և երկրորդ 12 մարդու առանց մի որ և է խոչնդոտների ստացան, իսկ հետագայ թոյլտւութիւն—երկրորդ խմբի—22 մարդու առաջարկեցին ժամանակամիջոց. իսկ վերջերս ինչ ինչ պատճառով արգելուեց:

Ինչ կարող են անել մի քանի անզէն հայեր, որոնց ամեն մի քայլն անգամ տնօրինած է հսկել. եթէ չլինի կառավարութեան վախը, մի րոպէ անգամ կենդանի չեն թողնիլ այդ տարաբախտներին:

Աւելորդ չեմ համարում հաղորդել, որ այդ շրջանի վրայ կուելանայ Բայբուրդի շրջանը, երբ այնտեղ մուտք գործէ ռուսական քաջարի բանակը: Այդ շրջանում կարելի է գտնել շատ փախստական և բռնի իսլամացրած հայեր, ուստի անհրաժեշտ է մի լիազօր նշանակել, որ կարողանայ (հարկաւ արտօնուած բանակի հրամանատարի կողմից) տեղն ու տեղը հետևել միաժամանակ զօրքի առաջխաղացման հետ և գտնուածներին խնամել:

Օլթուայ գաւառապետի այս գործում ցոյց տուած ջերմ աջակցութիւնը արժանի է ամենայն շնորհակալութեան:

Մարտի 2-ից մինչև մայիսի 14 գտնուածների թիւն է 87, որոնցից 31 տղամարդ և 46 կին, 3 տղայ և 7 աղջիկ մինչև 5 տարեկան:

Ստեփան Տէր-Մարգարեան

Արդահան, 28 մայիսի.

---

## ԼՔՈՒԱԾ ՈՐԲԵՐ

Շնորհիւ մի քանի ամիս առաջ Էջմիածնայ շրջանի մէջ իմ կատարած գաղթականական ծառայութեան, ես կարողացել եմ

ձեռք բերել նոյն շրջանի ինը գիւղի մէջ գտնուած որբերի մասին մանրամասն տեղեկութիւն՝ որ ահա տալիս եմ ստորև.

Բոլոր կէտադրութիւնները նշան են՝ որ մութ է մնացել, կամ չեն կարողացել մեզ ասելու իրենց անունն կամ ազգանունն և կամ որտեղացի լինելը:

Վերին Խաթունարխ գիւղ.—1. Յակոբ Սահակեան (17 տարեկան). Վան, Սոֆես գիւղից. հօր անունը Սահակ, մօրը՝ Մարան: Հայրը էջմիածնայ մէջ մահացել է, իսկ մայրը երկիր է վերադարձած, թէ ինչպէս է եղել չը գիտէ: Ապրում է նոյն գիւղի տանուտէր Տիգրան Վաղարշակեանցի տանը, որպէս ծառայ:

2. Արամ Բաղդասարեան (16 տարեկան). Մշոյ շրջանի Խամաս գիւղից, հօր անունը Բաղդասար, խորթ մօրը՝ Նարկիզ: Հայր, մայր, երկու քոյր ու մի եղբայր ճանբին կորցրել է, մնում է Բենեամին Ներսէսեանցի տանը, որպէս ծառայ:

3. Մովսէս Գրիգորեան (13 տարեկան): Վան, Արճակ գաւառի Մանդան գիւղից: Հօր անունը Գրիգոր, մօրը՝ Մարինա, որոնք նախ քան գաղթը իրենց գիւղի մէջ (Տաճկաստան) մահացել են. ունի մի քոյր, Սիրանոյշ, որը գաղթելուց յետոյ ամուսնացել է. կենում է Աւետիս Վարդանեանցի տանը՝ որպէս ծառայ:

Ներքին Խաթունարխ գիւղ.—1. Արուսեակ Դաւիթեան (12 տարեկան): Վան, Թիմար գաւառի Տիրամայր գիւղէն: Ըստ իւր ասածին ոչինչ չէ ունեցած. ապրում է Արշակ Մարտիրոսեանցի տանը, որպէս հոգևոր զաւակ:

2.—Անահիտ . . . . . (6 տարեկան): Անչափահաս լինելուն պատճառաւ, ոչինչ չհասկացուեց: Ըստ ուրիշների ասածին, Ալաշկերտի կողմերից է եկել, ապրում է Պապօ Մանուկեանենց տանը, որպէս հոգևոր զաւակ:

3.—Յասմիկ Նիկօեան (7 տարեկան), Ալաշկերտի կողմերից: Հօր անունը Նիկոլ, մօրը՝ Շողիկ: Ուրիշ տեղեկութիւններ չկարողացաւ տալ. ապրում է Խաչատուր Պաղալեանենց տանը, որպէս հոգևոր զաւակ:

4.—Աղաւնի Սարգիսեան (11 տարեկան): Վան, Բերդակ գիւղից: Հօր անունը Սարգիս, մօրը՝ Մաքրուհի: Վերջինս էջմիածնումն է այժմ: Ունեցել է Տիգրան անունով քեռի, որ Թիւրքերի զինուոր է այժմ. կենում է Օհանեսեանենց տանը, որպէս հոգևոր զաւակ:

5.—Արամ Մանուկեան (12 տարեկան): Վան, Հայոց Ձոր, Սիւտակ վանք գիւղից: Հօր անունը Մանուկ, մօրը՝ Թանկօ: Քոյրը իրենց գիւղին մէջ սպանուած է, իսկ մայրն և երկու քոյրերը—Հոռոմն ու Նարկիզը կորսուել են: Եղբայր չէ ունեցել. մնում է Գրիգոր (տեղացի) Կարապետեանենց տանը, որպէս հոգևոր զաւակ:

Փայթաղ գիւղ.—1. Շուշանիկ Գրիգորեան (12 տարեկան): Վան քաղաքի, Սահակ պէյ փողոցից: Հօր անունը Գրիգոր, մօրը՝ Սրբուհի: Հայրը նախ քան գաղթը Վանի մէջ մահացել է: Ունի նաև 2 քոյր, մեծը՝ Վարսենիկ, փոքրը՝ Աստղիկ, որոնք էջմիածնում են. մնում է Անդրէաս Պապայովեանի տանը, որպէս ծառայուհի:

2.—Փանոս Արգարեան (13 տարեկան): Վան, Ծորովանց գիւղից: Հօր անունը Արգար, մօրը՝ Լուսիկ, որոնք ճանապարհին կորսուել են: Ունեցել է երկու եղբայր՝ Վարդան և Ռաֆայէլ: Առաջինը էջմիածնայ հիւանդանոցում մահացել է, իսկ երկրորդին որբանոցից տարել են, չգիտէ ուր. ապրում է Ներսէս Մուխսի Յարութիւնեանենց տանը, որպէս ծառայող:

3.—Սմբատ Շիրինեան (14 տարեկան): Վան, Արճէշ գաւառի, Սոսկուն գիւղից: Հօր անունը Շիրին, մօրը՝ Գուլիզար: Հայրը նախ քան գաղթը սպանուած է, իսկ մայրը էջմիածնում մահացած. մնում է Խաչատուր Մուխսի Յարութիւնեանենց տանը, որպէս ծառայող:

Գրամբա գիւղ.—1. . . . . . . . . (4 տարեկան): Ոչինչ չիմացուեց: Էջմիածնայ վանքի միջից են գտել, վանեցիների գաղթած օրերին. ապրում է Գրիգոր Բարամ Սարգսեանենց տանը: Որբին գտնողը յիշեալ կինն է եղած, որին վերցնելով, այժմ խնամում է որպէս հոգևոր զաւակ:

2.—Յոլակ Ներսէսեան (10 տարեկան): Վան, Աւանց գիւղից: Հայրը՝ Ներսէս, նախ քան գաղթելը, Վանից Թիւրքերին փախցրելով Բիթլիս, այստեղ սպանւում է նոյն Թիւրքերից: Մայրը էջմիածնում մահացած է: Քոյր և այլն չունի. ապրում է մօրեղբայր Մարտիրոս Մինասեանի մօտ, որը նոյնպէս գաղթական է:

Հաջիլար գիւղ. 1. Թաւրիզ Յակոբեան (13 տարեկան): Վան, Թիմար գաւառի Խաւենցի գիւղից: Հայրը՝ նախ քան գաղթը, իրենց գիւղի մէջ մահանում է, իսկ մայրը, ինչպէս և երկու քոյրերը՝ էջմիածին: Եղբայր չունի: Գաղթական բարեկամներ ունի այս գիւղում, որոնց մօտ էլ ապրում է:

2.—Սրբուհի Վահանեան (15 տարեկան): Վան, Թիմար գաւառի Խաւենց հիւղից: Հայրը՝ Վահանը 4 տարիէ ի վեր Պոլսումն է, որից շատոնց տեղեկութիւն չունի, իսկ մայրը՝ Փարիկ գաղթելէ վերջ Հաջիլար գիւղին մէջ մահանում է. ապրում է գաղթական բարեկամներին մօտ:

Սամաղար գիւղ.—1. Խանում . . . . (5 տարեկան): Անչափահաս լինելուն պատճառաւ ոչինչ չհասկացուեց: Պահողից իմացուեց, որ նոր գաղթականներէն է եղած: Գտել են Վերին Այնալու (էջմիածնի մօտ) գիւղի ճամբի վրայի առուի մէջ. ապրում է գտնողի՝ Տիգրան Վարդանեանի տանը, որպէս հոգևոր զաւակ:

2. Անդրանիկ Օհաննիսեան (8 տարեկան): Վան, Բերկրի գաւառի, Դարաւլէկ գիւղից. հայրը՝ Օհաննէս, նախ քան գաղթը իրանց գիւղի մէջ քիւրդերէն սպանուած, երբ պաշտպանում էր իւր անասունները քիւրդերի թալանից. իսկ մայրը գաղթից 2 տարի առաջ մահացել է: Քոյր ու եղբայրներ չի ունեցած: Ինքը գաղթել է բարեկամների հետ, որոնք ճամբին կորսուած են: Իրան գտել են Երնջալու (Ալաշկերտ) գիւղում. պահում է Ստեփան Սահակեանը:

Մուղանջիւղ գիւղ.—1. Բարաղամ Յարութիւնեան (14 տարեկան). Վան, Գաւաշ գաւառի Թիմար գիւղից: Հայրը՝ Յարութիւն, և մայրը՝ Սուսան, նախ քան գաղթը իրենց գիւղի մէջ մահացել են: Քոյր և եղբայր չի ունեցած. ապրում է Սահակ Քեարամեանենց տանը, որպէս ծառայ:

Հայոց-Զէյվա գիւղ.—1. Կարապետ Աբրահամեան (7 տարեկան): Վան, Ալճաւազ գաւառի, Խաւենց գիւղից: Հայր չունի, մայրը մահացել է. ապրում է գաղթական բարեկամ Արշակ Պօղոսեանի մօտ:

Ներքին Այնալու գիւղ.—1. Բաղդասար Մկրտչեան: Վան, Հայոց Ձոր, Ոչխրանց գիւղ: Ոչ հայր ունի, ոչ մայր. ապրում է Վարդան Աւլանդեանի տանը:

2. և 3. Թոռնիկ և Ասծատուր (եղբայրներ) Նշանեաններ (Ա. 13, Բ. 12 տարեկան): Վան, Թիմար գաւառի, Ադեկօզալ գիւղից. ապրում են առանձին առանձին իրենց աշխատանքներով:

Վարմաջեար գիւղ.—1. Օդիկ Տիգրանեան (6 տարեկան): Վանքաղաքից, Կլորդար փողոցից: Հօր անունը Տիգրան, մօրը՝ Զարուհի: Մօրեղբայրների անունները միայն Կապտու, Միւսին՝ Տիգրան Մուխսի . . . . տղաներ: Ըստ որբի ասածին հայր ու մայրը մահացած են, իսկ ինքը անտէր մնալով, Երևանի փողոցներից մէկի մէջ գտնում է վերոյիշեալ գիւղի տանուտէրը ու վերցնելով խնամում որպէս հոգևոր զաւակ:

Փարաքար գիւղ.—2. Թանկօ Մկրտչեան (18 տարեկան): Վան, Շատախ գաւառի Կորր գիւղից. հօր անունը Մկրտիչ, մօրը՝ Մարգարիտ: Հայրը էջմիածնայ հիւանդանոցի մէջ ինչ է եղել— չգիտէ. իսկ մայրը մահացած է. ապրում է Վան, Բերկրի գաւառի, Պստիկ գիւղացի գաղթական Մկրտիչ Վարդանեանի մօտ:

«Տեղեկատու Բիւրոյ»-ի ուշադրութեանն ենք յանձնում այս բոլորը:

Փող. Հիւսեան

## ԳԱՒԱՌ

*ՍՈԳԻՒԹԼՈՒ գիւղ (Ալէքս. գաւ.), 28 մայիսի։—Երկու տարի առաջ, երբ մեզանում նորից ձեռնարկուեց հողաբաժանութեան գործը, գիւղիս իւրաքանչիւր տղայ ունեցող անհատ շտապ սկըսեց հարեան գիւղերից աղջիկ ուզել իր չափահաս թէ անչափահաս տղայի համար կին, որով գրեթէ հողը հաւասարուեց ու մնաց անկատար։ Այժմ այդ բոլոր ծնողները ներկայումս ապրելու խիստ դժուարութեան և աշխատող ձեռքերի պակասութեան պատճառով թէև զղջում են, բայց ուշ է։*

*—Այս 400 տանից բաղկացած Սոգիւթլուն հարեան բոլոր գիւղերից մեծ է և յարաճուն շնորհիւ իւր մի շարք սառն ու վճիտ աղբիւրների, թարմ և շատ առողջարար օդի։ Բնակիչները պահում են նահապետական դարի բոլոր հին սովորութիւններն ու աւանդութիւնները։ Վերին աստիճանի հիւրասէր և եկեղեցասէր միակ գիւղն է, որ գտնւում է Արագած լերան ստորոտում արեւմտեան կողմից։ Չնայած ներկայիս ապրուստի թանկութեան և անելանելի դրութեան, այստեղ դեռ ևս շարունակւում է հոգեհաց տալու սովորութիւնը իբրև պարտադիր։*

*Գիւղը ունի երկու դպրոց։ Պետական 60—աշակերտով, որն այս տարի պատերազմի պատճառով փակ է մնացել և ծխական դպրոց, որի շէնքը կառուցուած է պ. Բաղդասարեանների նպաստով։*

*—Այժմ ծխական դպրոցը ոչ մի գիւղից նպաստ չի ստանում. շարունակւում է իւր գոյութիւնը միմիայն խղճուկ աշակերտական թոշակներով։ Աշակերտների թիւը հասնում է մօտ 250-ի։ Գիւղումս տեղաւորուած են 80 տուն Մանազկերտի շրջանից Դեբեցի հայ փախստական, որոնք այս տարի 50-ից աւելի երկու սեռի երեխաներ ուղարկում էին այդ դպրոցում սովորելու։*

*Դպրոցը չունի գրադարան և չի ստանում ոչ մի թերթ։ Խնդրում եմ, որ՛ Համբաւաբեր շաբաթաթերթը իմ կողմից նուէր ուղարկէք Սոգիւթլու գիւղի չքաւոր դպրոցին։*

*Սարգիս քահ. Խալաթեան*

***

*ԲԱՇ ԳԻՒՂ.—Մուշի և Սասունի հայ փախստականները սկսած են շարան-շարան գալ դէպի Ռուսաստան։ Այսօր տեղս հասան 45 հոգի. սրանց պատմելով հետզհետէ գալու են նոր խմբեր, աւելի մեծ քանակութեամբ։ Բայց ցաւալին այն է, որ փախստականները, ճողոպրելով տաճկի սրից, այստեղ անօթի, տկլոր թափառում և ոչ մի տեղից դեռևս որևէ օգնութիւն չեն ստանում։ Եթէ շուտափոյթ օգնութեան ձեռք կարկառող չլինի, այս թշուառները գոհ պիտի գնան անողոք սովին։*

***

*ՍՈՒԼՏԱ (Ախալք. գաւ.), 5 մայիսի։ Ներկայ համաշխարհային պատերազմը արգելք դարձաւ, այնքան կարևոր, մեր գիւղի ծխական դպրոցի փառաւոր շէնքի ամբողջապէս կառուցման գործը աւարտելուն։ Գիւղումս 150-ի չափ երկու սեռի մանուկներ սրտատրոփ սպասում են շէնքի աւարտման, որ ազատուեն գիւղական խոնաւ, խաւար և խղճուկ հակառողջապահական պայմաններից գուրկ օդաներից... Գիւղացիներիս ուրախութիւն պատճառեց «Հորիզոն»-ի լուրը, որ մեր դպրոցի շէնքի համար կազմուած հանգանակիչ յանձնաժողովի անդամները՝ մեր հայրենակից պ. պ. Յով. Մալխասեան, Տ. Մարգարեան և Մ. Մաղաքեանն Թիֆլիսում հանգանակել են 1000 ռուբլի նուէր ի նպաստ դպրոցի կառուցման։ Մօտ օրերս երկրորդ անգամ Սուլտա ժամանեց վիճակիս գործակալ բարձ. հայր Երուանդ վարդապետը, որ հրա՛ւիրելով գիւղացիներին եկեղեցու գաւիթը, ազդու քարոզ առեց ուսման, կրթութեան մասին և առաջարկեց Օշորա և Օթա գիւղերի անտառներից իրանց սայլերով փայտ բերեն դպրոցը ծածկելու, որ յանձն առան կատարել։ Հայր գործակալը Սուլտայից անցաւ Կարզախ գիւղը, նոյնպէս դպրոցական գործով։ Յաջողութիւն հայր Երուանդի սկսած ս. գործին։*

*Արսէն քահ. Բլրցեան*

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

—

### ՆՈՒԷՐՆԵՐ

*Տիկին Օլգ. Բէգլարենա Դեխանովայից շնորհակալութեամբ ստացուել է Աստրախանի Հայկական կոմիտէի միջոցներով տեղս բացուած փախստականների որբանոցի օգտին 30 ռուբլի։*

***

*Հ. Կենտր. Կոմիտէն ստացել է Կովկասի գլխաւոր Կոմիտէտից՝ Երևանի, Գանձակի, Թիֆլիսի և Կարսի շրջանների գաղթականների դպրոցների համար 15,000 ռ.։*

***

*Ցարիցինից—Ս. Դոմբայեանից ժողոված Ս. Ն. Օջախեանի հարսանիքի հանդէսին 335 ռ.։ Նուիրատուների ցուցակը կը տպագրուի «Համբաւաբերի» յաջորդ համարում։*

***

*Պեատիգորսկի ճիւղից.—Մնացորդ առ 1-ն յունվ. 1915 թ. 78 ռ. 73 կ.։ Տարուայ ընթացքում մուտք եղել է 4718 ռ. 96 կ., ծախք 4583 ռ. 67 կ., մնացորդ առ 1-ն յունվ. 1916 թ. 214 ռ. 02 կ., բացի այդ ունի պահեստում մնացորդ գումար 206 ռուբլի 02 կ.։*

***

*Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է. 1. Գրոզնի ճիւղից յօգուտ փախստականների 122 ռ. 15 կ., 2. Տուապսէից —46 ռ., 3. Ղուրայի ճիւղից յօգուտ որբ երեխաների 50 ռ., այդ գումարը ստացուած է Տիգրան Աւագեանից իւր հանգ. հօրեղբօր որդու դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն։ 4. Եղբ. Սէյլանեաններից դպրոցական նպաստ 200 ռ.։ 5. Ախալքալաք գիւղից —Յարութիւն քահ. Միրիմանեանի միջոցով տ. Աննա Մամացեանից յօգուտ փախստականների 10 ռ., 6. Թիֆլիսի առաջին մասնաւոր լոմբարդից յօգուտ զինուորական հիւանդանոցի 9 ռ. 52 կ.։*

***

*Հ. Կենտ. Կոմիտէն իւր «Մի բաժակ թէյից» ստացել մայիսի 1-ից մինչև յունիսի 1-ը 1916 թ. 6706 ռ. 34 կոպ.։ Ելք եղել է 4883 ռ. 29 կ., մաքուր արդիւնք—1823 ռուբ. 05 կ.։*

***

### ՀԱՇԻՒ

*Հայկ. Կենտ. Կոմիտէի Արդահանի շրջանի լիազօր պ. Ստ. Տէր-Մարգարեանի ստացած և ծախսած գաղթականական գումարների.*

*ՄՈՒՏՔ.—Կ. Հ. Բ. Ը-թեան Կարսի ճիւղից 300 ռ., Կիսկիմցի Մելիտոս Յովհաննիսեանից և իւր 6 ընկերներից 50 ռ., Կառավարչից ստացած բաժինը (паекъ) 38 ռ., Նահապետ Թարչեանից 40 ռ., Սարգիս Շահպազեանից 45 ռ., Յակոբ Մականովից 60 ռ., Արամ Փափազեանից և իր 9 ընկերներից 35 ռ., Աղէքսանդր Տիւրքեանից և 5 ընկերն. 25 ռ.։ Մինաս Վարդանեանից և 6 ընկերն. 30 ռ., Օլթի շրջանի զօրքի մատակար. պ. Յովհ. Գիւրքեանից 100 ռ., Աղէքսանդր Վարդանեանից 50 ռ., Միքայէլ Տէր-Աւետիսեանից 10 ռ.։ Ընդամէնը 803 ռուբ.։*

*ԵԼՔ.—Հեռագրերի 69 ռ. 17 կ.։ Ճանապարհածախք մինչև Ալէքսանդրապ. 81 մարդու 266 ռ., Ապրուստի համար 96 ռ. 93 կ.։ Ընդ. ծախք 432 ռ. 10 կ.։ Վերադարձրած Հայկ. Կենտ. Կոմիտէին 310 ռ. 90 կոպ., ընդամէնը 803 ռ.։*

***

### ՃԻՒՂԵՐ

*Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը ստացել է հետևեալ ճիւղերի 1915 թուի հաշիւները—Դիլիջանի ճիւղ. Առ 1-ն յունվ. 1915 թ. մնացորդ գումար ունեցել է 287 ռ. 97 կ., տարուայ ընթացքում մուտք ունեցել է 3038 ռ. 23 կ., ծախք 2904 ռ. 30 կ., մնացորդ առ 1-ն յունվ. 1916 թ. 421 ռ. 89 կ.։*

---

*Գօղոս և Եւգինէ Ղուկասեան ամուսինները 10,000 ռ. են նուիրել Հայոց Ազգագրական Ընկերութեանը՝ թանգարան—երկու դահլիճ կառուցանելու և կահաւորելու համար։*

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### Հ. ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻՆ.

*Համաձայնութեան գալով Նեվերովի հետ՝ հեռագրուեց գեներալ Թամամշեանին, որ նա իր ստացած երեք ու կէս միլիոնից տայ որբանոցների համար Պետրոգրադի ընկերութեան ներկայացուցչին երկրորդ քառորդի համար, այն է՝ մինչև մայիսի մէկը երկու հարիւր յիսուն հազար ռ. մայիսի համար։ Վերջին գումարը փոխադրուած է 12-ին մայիսի։ Գաղթական դպրոցների նպաստի մասին կըհաղորդեմ այս օրերս։ Ասլիբէգեանը և Զալխուշեանը շուտով կը լինեն Թիֆլիսում։*

*Պապաջանեան*

—

*Բիթլիս, Տէր-Գէորգեանից.*

*Բիթլիսում քիչ կան գաղթականներ. նրանք տեղափոխուած են Վան և Մանազկերտ։ Գնում եմ Մուշ։*

—

*Վան, Սաֆրաստեանից.*

*Աշնանացանի յաջողութեան համար անհրաժեշտ է այժմեանից ձեռնարկել հողերը հերկելու։ Ծանօթանալով տեղական պայմաններին, համարում եմ շատ անհրաժեշտ շտապեցնել գիւղատնտեսական գործիքներ ուղարկելը։*

*Տեղական հասարակութեան կարիքների համար ցանկալի է բանալ մթերքների պահեստ։*

*Թիֆլիս կըվերադառնանք պ. Բեկստոնի հետ, Բիթլիս ճանապարհորդելուց յետոյ։*

—

*Կենդեւերից (Պարսկաստան), Ներսէս եպիսկոպոսից.*

*Սուր կարիքը ստիպում է խնդրել անյապաղ բանալ հայերի և ասորիների համար Բաշկալայում, Դէարում և Սալմաստում երեք պարենաւորման կայան։ Խնդրում եմ շտապէք։*

—

*Ախալքալաք—Շահնազարեանից.*

*Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղը որոշեց բանալ մի որբանոց 100 հոգու համար. ուղարկեցէք գումար կահաւորման։*

—

*Մանազկերտ—Խաչատրեանից.*

*Ամեն օր մեծ հոսանք կայ գերի ընկած հայերի։ Սննդատու կայարանների և սանիտարական հսկողութեան բացակայութեան պատճառով, եկողներից շատերը հիւանդ են, մերկ և քաղցած։ Շատ անհրաժեշտ է սանիտարական և սննդատու կայանի բացումը։ Հայոց Գիւղատնտեսական Ընկերութիւնը ապրիլի 29-ից մինչև յունիսի 7-ը բաժանել է 2,768 հոգու ցորեն միմիայն սովից փրկելու համար. օգնել այլևս անկարող է։ Վարակիչ հիւանդութիւններ են երևացել։ Դժբախտների դրութիւնը ողբալի է։*

—

*Խնուս—Ղամարեանից.*

*Փոխադրեցէք Սագօրի լիազօր Ռուբէն Տէր-Մինասեանի անունով 5 000 ռ. փախստականների սննդի համար։*

—

*Վան—Մալխասեանից և Համբարձումեանից.*

*Միացեալ ընկեր... թիւնների ուղարկած 40,009 ռ. գումարները դեռ չ... տացել։ Հարկաւոր է ձեռք առնել շուտափոյթ միջոցներ հասցնելու գումարներ և մանգաղներ, այլապէս խոտը կըփչանայ և աշնանացանի հողերը հերկելու ժամանակը բաց թողած կըլինենք։*

*Շուտով կստանանք Թադէոսեանից լծկաններ։ Փոխադրեցէք փող հեռագրով գեներալ Թամամշեանի օրդերը ստանալուն պէս։ Տեղումս մթերքներ շատ քիչ կան։ Սպառնում է սով։ Ձեռք առէք ամեն տեսակ միջոցներ՝ առայժմ այստեղ պահելու կանանց և երեխաներին։*

---

## Քրոնիկոն

*. Հ. Կենտր. Կոմիտէի յունիսի 9-ին կայացած նիստի որոշումները.—Ի նկատի առնելով, որ ներկայ ուսումնական տարում գաղթականական դպրոցների դասաւանդութիւնը կանոնաւոր չէ ընթացել, Կոմիտէն որոշեց չարձակել դըպրոցները ամառուայ ամիսներում։ Բայց պարապմունքները ընթանալու են փոփոխուած ծրագրով, որը մշակուելու է առանձին ժողովում և ուղարկուելու է գաւառները շրջաբերականով։*

***

*Որոշուեց փոխադրել Դիլիջանի որբանոցներին յունիսի կիսամսեակի համար 6000 ռուբլի։*

***

*Բաշկէյի ճիւղի վարչութիւնը տեղեկացնում է Կոմիտէին, որ համաձայն վերջինիս կարգադրութեան, Բաշկէյի որբերը տեղափոխուեցին Ալէքսանդրապոլի Նոր որբանոցը։*

***

*Հայ գաղթականներին օգնող Ամերիկական կոմիտէի լիազօր բժ. Կրէսսին, որ օրերս հրաժարուեց Ալաշկերտից Թիֆլիս ամերիկական հիւպատոսի պաշտօնով, յայտնեց Կովկ. կոմիտէին իւր աշխատակցուհու միջոցով, որ նա գերադասել է վերադառնալ Ալաշկերտ և շարունակել գաղթականներին օգնելու գործը։ Նրա տեղ նշանակուած Ալաշկերտի հիւանդանոցը բժ. Օհանեանին Կոմիտէն տեղափոխում է մի ուրիշ շրջան դարձեալ բժշկական պաշտօնով։*

***

*Նիստը որոշեց բանալ Դիլիջանում մի որբանոց-հիւանդանոց Թիֆլիսի այն թուլակազմ որբերի համար, որոնք անկարող են տանել Թիֆլիսի շոգերը։*

***

*Նոյնպէս ծանր շոգերի պատճառով որոշուեց տեղափոխել Հին-Նախիջեանի որբերին Նոր-Բայազէդի Նոր բացուած որբանոցը։*

***

*Կենտ. Կոմ. փոխադրում է Ախալցխայի ճիւղի վարչութեան 2000 ռ. նոր բացած որբանոցի կահաւորման համար։*

***

*Կոմիտէն յանձնեց գաղթական աշակերտների համար բացուող ճաշարանի կազմակերպութիւնը հայ կանանց Կոմիտէին։ Ծա-*

ղարանը պահուելու է միայն ամառուայ ամիսներում, Կոմիտէի հաշուով։

***

Որոշուեց պատուիրել Կոմիտէի արհեստանոցներում որբերի համար հագուստեղէն 500 հոգու։

***

Հ. Կենտ. Կոմիտէն բացում է նոր Բայազէդի շրջանում գաղթականական արհեստանոցներ, որտեղ պատրաստուելու են մազեղէնից գործուող սանդալներ (չուստեր) գաղթականների համար։ Արդէն յատկացրուած է 1000 ռ., և Կոմիտէն մտադիր է յատկացնել մի խոշոր գումար, եթէ գործը յաջողութիւն խոստանայ։

***

Յայտնում ենք ի գիտութիւն մեր բոլոր վարչութիւնների, որ այսուհետև Կ. Հ. Բ. Ընկ-թեան և Հ. Կ. Կոմիտէի հեռագրային հասցէն հետևեալն է, Тифлисъ. «КАБО». խնդրում ենք մեր բոլոր վարչութիւններին պաշտօնապէս դիմել տեղային պոստերի վարչութեան և հաստատել տալ միևնոյն պայմանական հասցէն մեր բոլոր վարչութիւնների և ենթակոմիտէների համար։

***

Կ. Հայոց Գիւղատնտ. Ը-թեան վարչութեան նախագահ պ. Ա. Սահակեանը ուղևորուեց Վան՝ գեներալ Վ. Մ. Թամամշեանի յանձնարարութեամբ կազմակերպելու Վանի շրջանի գիւղերում վար ու ցանքսի գործերը հայոց կազմակերպութիւնների՝ Կ. Հ. Բարեգ, «Նպաստամատոյց» և Հ. Գիւղատնտեսական ընկերութեանց նոյն շրջանի ներկայացուցիչների հետ միասին։

***

Կ. Հ. Բ. Ընկ-թիւնը ուղարկեց պ. Վահան Փափազեանին, իբր լիազօր կազմակերպելու Վանի շրջանում՝ քաղաքում և գիւղերում կենսական մթերքների պահեստներ և սպառողական խանութներ։ Պ. Փափազեանը տարաւ իր հետ մի շարք պաշտօնեաներ։ Նա միաժամանակ լինելու է նոյն ընկերութեան ներկայացուցիչը գիւղացիներին լծկան, սերմացու և գիւղատնտեսական գործիքներ բաժանելու գործերում։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդի որոշմամբ Ներսէս եպիսկոպոս Մելիք-Թանգեանին յանձնարարուած է՝ Պարսկաստանի գաղթականների համար կազմակերպել կենսական մթերքների պահեստներ երեք կենտրոնական վայրերում։

***

Փախստականների գործերի գլխաւոր լիազօր գեներալ Վ. Մ. Թամամշեանը իր օգնական պ. Լ. Եւանգուլեանի հետ այսօր ուղևորւում են Վան՝ աւելի մօտ ծանօթանալու պատերազմից վընասուած տնտեսական դրութեան և տեղն ու տեղը հարկաւոր կարգադրութիւններն անելու։

***

Հայ փախստականներին նպաստող անգլիական ընկերութեան ներկայացուցիչ միստէր Բէկստոնը Կարնի վիլայէթը շրջելուց յետոյ անցել է Վան. այնտեղից էլ գնալու է Բիթլիս և վերադառնալու։

***

Հայկ. Կենտ. Կոմիտէի կողմից Ալաշկերտ ուղարկուած ամերիկացի բժիշկ պ. Կրէսսի վերադարձել է Թիֆլիս։ Ամերիկայի կառավարութիւնը առաջարկել է նրան ընտրել Թիֆլիսի ամերիկական կոնսուլի պաշտօնը պ. Սմիտի փոխարէն, որը կանչուած է Ամերիկա կառավարութեան կողմից։ Պ. Կրէսսին հրաժարուեց կոնսուլի պաշտօնից, ի նկատի առնելով, որ ինքը եկել է որոշ առաքելութեամբ (միսսիայով) բժշկական օգնութիւն հասցնել տառապեալ հայ փախստականներին։ Կրէսսին այժմ հիւանդ է. հետևանք է Ալաշկերտի աննպաստ կեանքի պայմանների։ Յոյս կայ, որ նա շուտ կապաքինուի և իսկոյն կը վերադառնայ Ալաշկերտ, ուր հիմնում է հիւանդանոց. իր վրայ է վերցնում թէ հիւանդանոցի, թէ տեղական որբանոցի և թէ շրջակայ ճիւղերի բժշկական ծանր գործը։

***

Կ. Հ. Բ. Ը-թեան պահեստների բաժանմունքի գրասենեակը Երևանեան հրապարակից, Թիֆլիսի վաճառականների տնից, տեղափոխուեց Արաս-Արաթսկի հրապարակ, Ընկերութեան սեփական տունը, № 7։

***

Թիֆլիսի քաղաքային խորհրդարանը (Դուման) իր վերջին նիստում որոշեց վարչութեան անդամների ռոճիկը հասցնել 6000 ռուբլու տարեկան, և ցանկութիւն յայտնեց, որ վարչութեան անդամները կողմնակի վարձով գործեր և պաշտօններ յանձն չառնեն, Վարչութեան անդամ պ. Մ. Աթաբէկեանը, գտնելով, որ խորհրդարանի (Դումայի) որոշումը քաղաքների պոլոժէնիայի տեսակէտից ապօրինի է, որ Դուման իր այդ որոշումով խախտում է այն բնական իրաւունքը՝ որ պաշտօնական ժամերից դուրս ժամանակի օգտուելը կախուած է պաշտօնեայի ազատ կամքից, և որ ըստ պոլոժէնիայի Դուման իրաւունք ունի ամեն մի անդամի ընտրութիւնից առաջ միայն որոշել նրա ռոճիկների չափը և այլ թոյլատրելի պայմանները, և ոչ թէ ընտրութիւնից յետոյ, յայտնել է քաղաքագլխին, որ նա հրաժարւում է իր պաշտօնից։ Ուրբաթ օրը կայացաւ իրաւաբանների մասնաւոր խորհրդակցութիւն և գտնուեց, որ պ. Աթաբէկեանի պահանջը իրաւացի է։ Վաղը Դուման վերաքննելու է այդ որոշումը և հաւանական է, որ Դուման փոխի իր որոշումը և պ. Մ. Աթաբէկեանի պէս Վարչութեան գործունեայ անդամը կրկին ստանձնի իր պաշտօնը։

***

Թիֆլիսի երկրորդ փոխադարձ վարկի վարչութեան անդամ յունիսի 5-ին կայացած ընդհանուր ժողովում ընտրուեց պ. Ս. Գալստեանցը։

***

Այս ամսի 10-ից Փոխարքայի դիւանատանը սկսուեց խորհրդակցութիւն մահմեդականների ներկայացուցիչների հետ միասին, քննելու Անդրկովկասի մահմեդականների համար սեմինարիա (հոգևոր միջնակարգ դպրոց) բաց անելու խնդիրը։

***

Թիֆլիսի ժողովարանի դահլիճում մեր տաղանդաւոր գեղարուեստագէտ պ. Գ. Բաշինջաղեանը կազմել է ցուցահանդէս իր աշխատութեանց պատկերների՝ որոնց մեծ մասը նոր են և արժանի առանձին ուշադրութեան։

***

Իշխանուհի Ս. Վ. Արղութեան-Երկայնաբազուկը իր դպրոցում բացել է մի հետաքրքրական ցուցահանդէս Ֆրեբելեան դասընթացների աշակերտուհիների պատրաստած իրերի։ Այս մասին աւելի մանրամասն տեղեկութիւն կըտրուի «Համբաւաբերի» հետագայ համարում։

***

Թիֆլիսում բացուած Աստրախանի հայ հասարակութեան փախստականների որբանոցում յունիսի 6-ին կայացաւ մանկական փոքրիկ հանդէս, որին ներկայ լինելու համար հրաւիրուած էին հիւրեր ևս։ Որբանոցը գտնւում է մէկ երկու-յարկանի տան մէջ. ներքին յարկում սեղանատունն է, իսկ վերևում՝ 5 սենեակից բաղկացած ննջարաններ 50 տաճկահայ որբերի համար։ Տունը ունի մի ընդարձակ գաւիթ, որ տանում է դէպի Քուռ գետը։ Հիւրերին բացատրութիւններ տալիս էին որբանոցի վարչութեան անդամ տիկ. Ս. Օգանէզեանցը։ Որբանոցում նկատւում

էր մաքրութիւն, կարգ և առհասարակ հոգատարութիւն և խնամք ղեկավարող տիկինների։ Երեխաները երգեցին, պարեցին, մարմնամարզական վարժութիւններ կատարեցին և այլն։ Հանդէսը անցաւ աջող. երեխաները ցոյց տուին յառաջադիմութիւն։

* * *

Վեհափառ Հայրապետի հրամանով Իսահակ Տէր-Ղազարեանը, որ մեր լրագրութեան մէջ յայտնի է «Պեսսիմիստ» անունով, նորից ընդունուել միաբան, և ամսիս 5-ին ձեռնադրուել է աբեղայ։

* * *

Հայերէն ամսագիր. Փիլիսոփայութեան դոկտոր Վահան Տէր-Գէորգեանցը դիմել է նահանգապետին և խնդրել իրաւունք Թիֆլիսում հրատարակելու գրական, գիտական և քաղաքական մի ամսագիր «Միտք» անունով։

* * *

«Աղամեանը դերերում». Աղամեանի մահուան 25 ամեակի առթիւ եռանդուն տիկին Օլգա Գենջեանը սոյն վերնագրով հրատարակել է Աղամեանի մի շատ յաջող պատկերը, որի շուրջը Աղամեանը 10 նշանաւոր դերերում։ Այս թերթը կարող է մի գեղեցիկ զարդ լինել մեր վաղաժամ վախճանուած աշխարհահռչակ դերասանի յիշատակը պահող հայ ընտանիքի համար։

* * *

Անդրկովկասի երկաթուղիների կառավարիչը յայտնել է բոլոր կայարանապետներին, որ վերսկսեն ընդունել ապրանքների փոխադրութիւնը Թիֆլիս-Կարս ուղղութեամբ,

* * *

Հանգ. Դերասան Աղամեանի 25 ամեակի առթիւ Հայ Օրիորդների Կոմիտէն որոշել է ամսիս վերջին լոյս ընծայել մի ալբոմ, որի արդիւնքը գործադրելու է Կոմիտէի որբանոցների վրայ։

* * *

Կ. Հ. Բ. Ընկ.-թեան գրադարան-ընթերցարանը, որ գըրքերն ստուգելու պատճառով 10 օր փակուել էր, այժմ բացուել է։

* * *

Յունիսի 2-ին տեղի ունեցաւ մեղուաբուծական դասընթացների բացումը, որ կազմակերպուել է Եկզարխ Պլատոն արքեպիսկոպոսի նախաձեռութեամբ վրաց եկեղեցական պաշտօնեանի և դպրոցների դասատուների համար։

* * *

Յունիսի 5-ին կայացաւ Հայոց Հրատարակչական Ընկերութեան տարեկան ընդհանուր ժողովը։

* * *

Թիֆլիսում մի խումբ հայ ուսուցիչների նախաձեռնութեամբ, առաջիկայ ուսումնական տարուանից բացուելու է մանկական պարտէզ՝ մայրենի լեզուով։

* * *

Թիֆլիսի քաղաքային վարչութեան 2 փուռն արդէն պատրաստ են, որոնք մի օրում թխում են 1200 փութ հաց։

* * *

Ներկայումս Աւճալայի ջրանցքը քաղաքին տալիս է օրական 1.700,000 դոյլ ջուր. չնայած դրան քաղաքի ծայրամասերում օրերով առանց ջրի են մնում։

* * *

Թիֆլիսի նահանգի տարրական դպրոցների ուսուցիչների համագումարը որոշեց երկրորդ համագումարը կայացնել 1917 թ. յունիսին։ Համագումարը որոշեց նաև ընկերութեան ճիւղեր բանալ Սղնախի, Գորու և Թելաւի գաւառներում

---

# Արտաքին տեսութիւն

## ՄԻՆԻՍՏՐԱԿԱՆ ՏԱԳՆԱՊՆ ԻՏԱԼԻԱՅՈՒՄ

—

Երկար տատանումներից յետոյ էր, որ Իտալիան վճռեց միջամտել համաշխարհային պատերազմին՝ Աւստրիայի հետ իր վաղեմի հաշիւները մաքրելու համար։ Ամբողջ ութ ամիս երկիրը բաժանուած երկու մասի՝ «ակտիւիստների» և «նէյտրալիստների» կամ պատերազմի կողմնակիցների և չէզոքութեան կողմնակիցների միջև՝ ներքին կատաղի պայքարի էր բռնուած։ Վերջը յաղթող հանդիսացան պատերազմի կողմնակիցները և Իտալիան անցեալ տարուայ գարնանը յարեց եռեակ համաձայնութեանը և դուրս եկաւ իր դարաւոր թշնամու—Աւստրիայի դէմ։

Իտալական պատերազմի հենց առաջին օրերից պարզ էր, որ այս ճակատը ընդհանուր պատերազմական գործում երկրորդական դեր պէտք է խաղայ։ Պարզ էր այս այն պատճառով, որ աւստրո-իտալական սահմանագիծը ռազմական տեսակէտից Իտալիայի համար շատ աննպաստ հանգամանք ունի։ Այդ սահմանագծի վրայ տարածուած Յուլեան, Կարնեան և Դոլոմիտովեան Ալպերը, ինչպէս և Զուիցերան Ալպերի ճիւղաւորութեանց բոլոր բարձրունքները և բոլոր լեռնանցքները գտնւում էին Աւստրիացիների ձեռքը։ Թառած այդ բարձրութիւններին ու բնական ամրութիւններին՝ նրանք մշտական սպառնալիք էին ներկայացնում Լոմբարդիայի և Վենետիկի դաշտերի համար։ Այս դժուարութիւնները յաղթել, աւստրիացիներին Տրիէստից դուրս քշել և իջնել Տրիէստի հովիտը—դիւրին գործ չպէտք է լինէր իտալացիների համար։ Այդ պատճառով էլ թէ նրանց և թէ դաշնակիցների ռազմագէտները նախազգուշացնում էին հասարակութեանը, որ իտալացոց առաջխաղացութեան նկատմամբ պատրանքներ (իլլիւզիաներ) չկազմէ։ Առնուազն պատերազմի առաջին երեք ամիսը կանցնի նախապատրաստական դանդաղ գործողութիւնների վրայ—ասում էին նրանք։

Դժբաղդաբար այս նախազգուշացումը աւելի քան տեղին էր. ոչ թէ երեք ամիսը, այլ այս ամբողջ տարին անցաւ իտալական ճակատում առանց ուշագրաւ դէպքերի։ Ճիշտ է, այդ ժամանակամիջոցում իտալացիք մի քանի գծերի վրայ դուրս մղեցին աւստրիացիներին իրենց դիրքերից և գրաւեցին Ալպեան լեռների հիւսիսային լանջերը, բայց այս առաջխաղացութիւնից էլ թշնամին զգալի կորուստներ չունեցաւ ոչ մարդկանց և ոչ մըթերքների։

Այս դանդաղկոտութիւնը պատերազմի առաջին ամիսներից իսկ սկսեց ջղայնացնել իտալական հասարակութեան որոշ խաւերին։ Մի կողմից նրանք ուզում էին, որ ինչքան կարելի է շուտ գրաւուի Տրիէստը և աւստրիահպատակ իտալացիները օր առաջ ազատուեն իրենց բռնաւորներից, իսկ միւս կողմից՝ նրանք ուղղակի անյարմար էին համարում իրենց ազգային արժանապատուութեան տեսակէտից, որ իտալացիք դաշնակիցներին համեմատաբար թոյլ օգնութիւն էին ցոյց տալիս։ Այս ջղայնութիւնն ուժեղացաւ անցեալ աշնան, երբ աւստրիացիք գրաւեցին Չերնոգորիայի Լովչէն սարը և Կատարրոյի նաւահանգիստն ազատեցին այդ սարից գործող թնդանօթների ազդեցութիւնից։ Աւելի եւս սաստկացաւ այդ ջղայնութիւնը, երբ պարզուեց, որ իտալական զինուորական սպայակոյտը (շտաբը) հակամիտութիւն չէ ցոյց տալիս Իտալիայից դուրս որ և է մասնակցութիւն ցոյց տալու դաշնակիցներին ընդհանուր գործում և մանաւորապէս հրաժարւում է Ալբանիայի գոնէ արևմտեան ափերը պաշտպանել աւստրիացիներից։ Իսկ երբ անցեալ ապրիլ ամսին աւստրիացիները մեծ ուժեր կենդրոնացնելով իտալական ճակատի վրայ դուրս մղեցին իտալացիներին մինչև օրս գրաւուած դիրքերից և մի քանի գծերում 7—10 կիլոմետր տարածութեամբ խորացան

խալական հողի վրայ՝ վերոյիշեալ ջղայնութիւնը հասաւ իր գագաթնակէտին։ Իտալական ակտիւիստները ոչ մի կերպով չէին կարողանում հաշուել այն իրողութեան հետ, որ իրենց զօրքը բաւական չէ որ մի ամբողջ տարուայ ընթացքում անկարող հանդիսացաւ յաղթել ուժասպառ Աւստրիայի զօրքի մի մասին, այլ և նրա առաջ տեղի է տալիս և հայրենի գաւառները լքում թշնամու առաջ...

Այս յուզուած տրամադրութիւնն իր արտայայտութիւնը գտաւ մայիսի 28-ի պարլամենտական նիստին, ուր Սալանդրայի կառավարութիւնը բուռն յարձակումների ենթարկուեց գրեթէ բոլոր կուսակցութեանց կողմից մինչև նրա երեան հանած իր թուլութեան պատճառով և վերջն էլ անվստահութեան քուէի արժանացաւ։ Իրերի այս դրութեան մէջ անհրաժեշտութիւն էր, որ կառավարութեան ղեկը յանձնուէր մի կոալիցիոն մինիստրութեան, և բոլոր կուսակցութեանց պարագլուխներն էլ արտայայտուեցին այդ մտքով։

Ներկայումս արդէն կազմուած է նոր կառավարութիւն՝ ձախակողմեան ազատամիտ Բոզելլիի գլխաւորութեամբ։ Նոր կառավարութեան մէջ են մտնում Սալանդրայի գործակիցներից 5 հոգի, որոնց թւում նաև Սոննինօ և Կորսի և 14 նոր անդամ։ Բոլոր կուսակցութիւնները՝ սկսած կաթոլիկներից մինչև ռէֆորմիստ ընկերվարականները իրենց ներկայացուցիչներն ունին մինիստրութեան մէջ։ Պէտք է յուսալ, որ նոր կառավարութիւնը խրախուսած նախորդի օրինակից, աւելի մեծ թափ երեան կհանի աւստրիական գործերում ու իտալական զօրքերը վերջնական հարուածները կհասցնեն ռուսական հարուածներից շշմած Հաբսբուրգեան միապետութեանը.

Ա. Ջամալեան

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՎԷՍԻՔԱ

(Յուշեր)

*Ա. Վռամեանին*

—

1914-ի յունիս 15-ն էր։ Դպրոցական մեծ արձակուրդը սկըսուած էր։ Վանի՝ էքսկուրսիաներին ծարաւի՝ ուսուցչութիւնը օգտուելով այն հանգամանքից, որ երկու ամիս առաջ Թուրք կառավարութիւնը հայերի օ ժ ա ն դ ա կ ո ւ թ ե ա մ բ Վասպուրականի և մասամբ Բիթլիսի շրջանը մաքրել էր քրդական հրոսակախմբերից, որոնք հայերի շատ շէն օջախներ քարուքանդ անելուց յետոյ, լուրջ վտանգ էին սպառնում կառավարութեան, քրդական ընդհանուր ապստամբութիւն առաջ բերելով, սկսեց խմբերով էքսկուրսիաներ կատարել դէպի իր հայրենի սրբազան, պատմահերոսական վայրեր՝ տեսնելու, ուսումնասիրելու, որն անհրաժեշտ է ամեն մի հայու, մանաւանդ ուսուցչութեան համար։

Վանի ուսուցչութիւն ուրեմն վանդակից դուրս թռած ազատ արծուի նման սլացաւ իր հայրենի լեռներն ու ձորերը, որոնք ժողովրդական հերոսների արեամբ ներկուած էին—Սանասար, Ողիմ, Կարկառ, Շատախ և լն. իւրաքանչիւր խումբը գնում էր մի ուղղութեամբ, ոտքով, հացներն ուսերնին առած. ո՞վ էր տուել վէրան Տաճկաստանում շոգեկառք և այլ փոխադրութեան միջոցներ։

Մեր խումբը, որ բաղկացած էր 8 հոգուց, որոնցից հինգն ուսուցիչ, ուղևորուեց Աղթամարի շրջանը, Գաւաշ, Մոկս, Կարկառ, Սպարկերտ։ Նպատակ ունէինք այցելել նաև Վասպուրականի անառիկ Զէյթուն-Ողիմ, տեսնել այդ մի ափ արիասիրտ ժողովուրդ, որ միշտ յաղթական յետ էր մղել ահագին թուով քիւրդ հորդաներին, բայց չկարողացանք դժբախտաբար....։

Անցանք Կարկառի, Մոկսի բարձրաբերձ լեռներ, անդնդախոր ձորեր, ուր Իշխանը իր խմբով բռնապետութեան ժամանակ թառել ու պահպանել էր հայ գիւղացուն, շատ անգամ դիմադրելով Թուրք կանոնաւոր զօրքին, որոնք թնդանօթներով ուզում էին այդ լեռներից վայր բերել ինքնապաշտպանութեան մարտիկ արծիւներին. տեսանք Ծիգնայ յայտնի «հրաշագործ» ս. Նշան հնապատմական վանքը, որը դարձել էր մահմեդականացած մի հայ ընտանիքի արմտեաց շտեմարան և անասունների ախոռ, որին իշխում էր յայտնի քիւրդ ցեղապետ Թահր-Աղան, այնտեղ մնացած մի քանի հայ ընտանիքներ ճորտեր դարձնելով։

Աշխատում էինք որքան կարելի է շատ տեղ տեսնել. ամեն մի քար, ամեն մի թուփ չէր վրիպում մեր ուշադրութիւնից. կարծես նախազգացումը մեզ ասում էր՝ վերջի անգամն է չէն էք տեսնում այդ դրախտանման վայրերը, այդ գլգլան սառն ու վճիտ աղբիւրները, շուտով հարաւի քամին պիտի խամրեցնէ այդ բոլորը. ընկերներ իրար ասում էինք՝ «որքան կարելի է աշխատենք շատ տեղեր ման գալ, սրան Տաճկաստան կասեն, գուցէ մի կարճ ժամանակից դրութիւնը այնպէս փոխուի, որ եկլի քաղաքից մի ժամ հեռաւորութեամբ գիւղերն էր չկարողանանք երթեւեկել»։

Տասնուհինգ օրուայ պտոյտից արբեցած ու թարմացած՝ Վան վերադարձանք, որը գտանք նոյն բնականոն վիճակում. գիշերները Այգեստանի խիտ ուռենիների միջից լուսնի պայծառ լոյսը ողողում էր զբօսնող հասարակութեան մի տեսակ խորհրդաւորութեամբ։ Մի շաբաթ անց լրագիրներ մէկը միւսից յետոյ յայտարարեցին Սերբ-Աւստրիական, Ռուս-Գերմանական—Համեւրոպական պատերազմը։ Եւ ահա այդ լուսնկայ գիշերներից մէկը՝ երբ բնակչութիւնը պտոյտից յոգնած Մորփէոսի գիրկն էր ընկել, կառավարական մի քանի փոլիսներ թմբուկ խփելով մունետիկ էին կանչել տալիս. «մինչև եօթ օր 20-45 տարեկան թէ մահմեդական, թէ քրիստոնեայ զինուորագրուելու են»։ Պէտք էր տեսնել ահաբեկուած, գիշերանոցով, փողոցներում թափուող բնակչութեան իրարանցումը։

Կառավարութիւնը հայերի համար այդ ձևի անսպասելի զինուորագրութիւնը իրականացնելու համար դիմեց Վանի Դաշնակցութեան ներկայացուցիչ Արամի օժանդակութեան։ Վերջինիս իրաւացի յորդոր-հրահանգով բոլորն էլ՝ թէ քաղաքացի, թէ գիւղացի նուագախմբով յօժարութեամբ գնում էին զինուորագրուելու, իրենց Օսմանեան քաղաքացիական պարտք կատարելու....։ Մնում էր միայն հայ ուսուցչութիւն, որը մեծաւ մասամբ երիտասարդ և զինուորական տարիքում էին։

Չը նայած որ Վանի թիւրք ուսուցչութիւն նոյն իսկ զէնքի տակ էր առել, բայց հայերին ընդհանրապէս, Վանեցիներին մ ա ս ն ա ւ ո ր ա պ է ս սիրաշահելու կեղծ քաղաքականութեամբ, զիջեց առաջնորդարանի դիմումին, հայ դպրոցներ վերսկսելու համար առայժմ հայ ուսուցչութիւն զէնքի տակ չառնել, նրանց համարել քաղաքապահներ, տալով նրանց վէսիքաներ (ազատութեան թուղթ) պայմանաւ որ շաբաթ երեք անգամ ներկայանան կառավարութեան, շարունակելով իրենց դպրոցական պարապմունքները։ Եւ այդ պայմանագրութեամբ մօտ 150 ուսուցիչ ստացան վէսիքա։

Երբ սկսեց Ռուս-Թուրքական պատերազմը, կառավարութեան հայի հանդէպ ունեցած բարեացակամութեան կեղծ դիմակը քիչ-քիչ պատռուեց։ Օր աւուր լուրեր էին հասնում, թէ հայ զինուորներից շատերը զինաթափ արուելով սպանուում են զանազան պատրուակներով։ Շատ անգամ պահանջում էր ուսուցիչներ զէնքի տակ առնել իբրև թէ Կովկասեան, Պարսկական սահմանագլուխ ուղարկելու, բայց միշտ էլ նրան չէր յաջողուեր այդ։ Առաջնորդարան կ տ ր ո ւ կ յիշեցնում էր կառավարութեան պայմանը, վերջինս լռում էր առժամանակ, սպասելով յարմար առիթի։

Վերջապէս Վանի հայ ուսուցչութիւնը մի կ ե ր պ ե օ լ ա

տարաւ 1914/15 դպրոցական տարին մինչև ապրիլ 5-ը, շաբաթ օր, երբ գոյժ հասաւ թէ Իշխանը իւր երեք ընկերներով դաւադրութեամբ սպանուել է, իսկ Վռամեանը դարձեալ դաւադրութեամբ Ջէվտէտի տուն պահուած է։

Ահա այդ օր վերջ գրուեց Վասպուրականի անորոշ դրութեան. ընդհարում, կոտորած անխուսափելի էր այլ եւս։ Ու Վանի վէսիքաւոր ուսուցչութիւն զէնքի տակ մտաւ ոչ թէ Թուրք կառավարութեան բանակում իբր թէ իր «հայրենիքի» պաշտպանութեան համար, այլ իր ազգակիցների հետ, պաշտպանելու ընտանեկան պատիւը Թուրք ու քիւրդ բորենիների կատաղի յարձակումներից։

Եկատերինոֆելդ Խ. Գէորգեան

## ԲԻԹԼԻՍԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ

*Թրքական գազանութիւններից*

—

Նախ-քան սահմանադրութիւնը, Տաճկաստանում հայերի կրած զուլումները կարելի է ամբողջովին վերագրել ղուրանական մոլեռանդութեան։ Սահմանադրութիւնը՝ որին ամբոխը առաջ մեծ զզուանքով էր նայում՝ կասկածելով, որ իրաւունքների հաւասարութիւն ընդունելով՝ հայերը դուրս կըգան իրենց ռայական շրջագծից, որ մեղանչանք կը լինի ղուրանի դէմ հաւատացեալների համար։ Սակայն հենց այդ խորթ թուացող սահմանադրութիւնն անակնկալի բերեց Թուրք ամբոխին, տեսնելով որ հայերը դարձեալ նոյն կատարեալ ռայական շրջագծին մէջ տարուեցին միմիայն կուլտուրական խնդիրներով, ունենալով եւ մի սառնութիւն դէպի իրենց սեփական կրօնը։ Այդ իսկ պատճառով սահմանադրութիւնը մի մասնաւոր չափով հարթեց երկու ժողովուրդների մէջ եղած դարաւոր խոչընդոտը և ստեղծուեց որոշ չափի համակրութիւն երկու կողմից։

Հայերը իրենց ընթանալիք ուղին գտել էին, կուլտուրական բոլոր ճիւղերում սկսել էին եռ ու զեռը։

Թուրք պաշտօնեաները տեսնելով հայերի կուլտուրական-յառաջդիմական քայլերը, վարանմունքի և նախանձի շապիկ զգեցան արտաքին կեղծ բարեկամութեան տակ. համոզուած լինելով, որ հայերը, կուլտուրապէս յառաջդիմելով պիտի ուժեղացնեն իրենց ուրոյնութիւնը և հեշտիւ լսելի անեն իրենց նոյնիսկ տարրական բողոքները։

Ցեղադիմութեան սադայէլները կրկին իրենց դերի մէջ մտան։ 1912 հոկտ. 25-ին, երբ Բիթլիսի մօտիկ Ղուլթիկ գիւղի հրապարակում, կուսակալի քթից մի ժամ հեռու, արտասահմանից վերադարձող երկու հայերի սպանութեան սովորական դէպք պատահեց և կառավարութիւնը դէպի յայտնի ոճրագործները անտարբեր գտնուեց, Բիթլիսի հայերը գործադուլ արին և պահանջեցին ոճրագործներին օրինական պատժի ենթարկելու։ Կառավարութիւնը և մասնաւորապէս Սասնոյ (Տալուորիկ) 94-ի կոտորածի տխրահռչակ հերոս կուսակալ Ալի փաշան փոխանակ հայ ժողովրդի արդար բողոքը լսելու և ոճրագործներին արժանի պատիժ տալու, ուլի ջամիի (մեծ մզկիթ) մէջ նախատինքով գրգռեց Թուրքերին հայերի դէմ ասելով». Հայերը կուլտուրապէս տիրապետած են ձեզ. երբ հայերը գոցել են իրենց խանութները, շուկան ամայի է դարձել»։ Եւ քանի-քանի այս տեսակ դէպքեր որ բացարձակօրէն անտես են եղել «եղբայր» իտտիհատականների կողմից։ Միթէ մէկը պիտի սեպուի կասկածել, որ Բիթլիսի, Վանի, Մուշի և այլ գաւառների անթիւ ու արիւնալի դէպքերը «եղբայր» իտտիհատականների խորհրդով են եղած՝ հայերի յառաջդիմական ընթացքին մահացուցիչ խոչընդոտներ ստեղծելու համար։ Եթէ ոչ ապա ինչու իրենց արբանեակ յայտնի ոճրագործները ազատ կը մնային, և կը խեղդուէր ոչ թէ միայն հայ ժողովրդի աղերսող ձայնը, այլ և միջամտող կոնսուլների բողոքող դիմումները։ Հայ զինուորը Բալկանեան նախորդ պատերազմին Թուրք բանակի թև ու թիկունք՝ հերոսաբար կռւում էին յանուն հայրենիքի, իսկ հայրենիքումը բռնաբարւում էին նրա անձեռնմխելի իրաւունքները։

Հայերը գլուխ կորսնցրած՝ նորից անմեղութեան զոհ լինելու համար՝ պարտաւորուեցին կրկին բաղխելու միակ ապաւէն Եւրոպական պետութիւնների քար դռները։

Երկար բաղխումները իրենց ձանձրալի պատասխանն ստացան։ Ռեֆորմների հարցը ծամծմուեց և որոշուեց չէզոք պետութիւններից Հոֆն ու Վեստենենկը իբրև բարեկարգիչներ։ Այդ հոգեհան ռեֆորմ եկաւ Թուրք պաշտօնեաների համոզմունքն ու պրոպագանդը հիմնաւորելու։ Թուրք ամբոխի մէջ խժդժութիւնները շարժուել սկսեցին, սակայն անյորձանք մնացին եւրոպական ընդհանուր պատերազմի առթիւ՝ բարենորոգիչների չըպաշտօնավարելու պատճառով։

1914-ի յուլիսի 22-ին սկսուեց թրքական զօրահանութիւնը։ Թուրք պաշտօնեաների երազած վարկեանը հասած էր։

Կարևորութիւն անգամ չտալով որ հայերին 26 տարեկանից վեր չպէտք էր զինուոր առնէին, ոտնակոխ արաւ սահմանուած օրէնքը 18—50 տարեկանները կանոնաւոր զօրքի կարգ մտցնելով և ցրուելով Տաճկաստանի այլ և այլ սահմաններում գտնուող զօրաբանակների մէջ։

Գեաւուր*) բառի գործածութիւնը մասնաւորապէս պաշտօնեաներից լայն ծաւալ ստացաւ հենց զօրահանութեան սկզբից։

Չնայած որ եղբայրս Արմենակը (Սլաք) զօրահանութիւնից չորս շաբաթ առաջ Կարին էր գնացել դաշնակցութեան VIII-րդ ընդհ. ժողովին, բայց զօրահանութեան առաջին օրերին իսկ իտտիհատական պաշտօնեաները սկսեցին գրպարտութիւններ տարաձայնել այդ ժողովի մասին, որպէս թէ այդ ժողովը դիտումնաւոր է. հայերին Թուրքերից անջատելու համար է։ Երբ ինձ Բիթլիսում ձերբակալեցին իբրև զինուորացուի, հակառակ ծանուցման և իրենց հետ ունեցած մօտիկ ծանօթութեանս, շատ կոպիտ ու գռեհիկ վարմունք ցոյց տուին. ի միջի այլոց ժանդարմայի գլխաւորը շեշտեց, թէ «եղբայրդ» Արմենակ էֆէնդին ո՞ւր է գնացել ժողովի, ինչ ժողով է...»։

Վան հասնելիս իմ անփորձութիւնը նկատի չառնելով վարժուած զօրքերի կարգ անցրին **)։ Մի օր, սաստկալի հիւանդ լինելով խնդրեցի, որ ինձ բժշկին տանեն, բայց փոխանակ ինձ բժշկին տանելու թեւս բռնած քաշեցին վարժութեան։ Մարզանքի ժամանակ երբ սիրտխառնուկ ստացայ ու փսխում էի, մեր հրամանատարը՝ Ահմէդ էֆէնդին սկսեց սուրի պատեանով սաստիկ խփել, հիւանդութիւնս համարելով յանցանք. երկրորդ օրը կրկին երեք անգամ փայտի տասնական հարուածի ենթարկեցին միւս հրամանատարներս, պարտաւորեցնելով ինձ արտաքնոց մաքրել։ Այդ տաժանելի ու զզուելի աշխատանքը չկրնալով տանել, գլխակամակելուս՝ խիստ ծեծի ենթարկուեցայ, մինչև որ ուշաթափուեցի և հիւանդ պառկեցի.

Թուրք ու քուրդ պահեստները հենց զօրահանութեան սկզբից, հենց որ զօրքի մէջ էին բերւում, զինուելուց յետոյ զէնքով փախչում էին։ Նոյնիսկ ծաղրի առարկայ էր դարձել անկանոն զօրահաւաքութիւնը։ Եկողներն ու փախչողները երբ իրարու հանդիպէին ճանապարհին, առաջինն ասում էր. «ես զինուորութիւնից եմ գալիս, իսկ երկրորդը ծիծաղելով աւելացնում էր. «ես զօրքից եմ գալիս, գնա դու էլ էն շ ո ր պ ա յ ի համը առ ու դարձիր արի»։ Մենք տակաւին գոհունակութեամբ ճաշակում էինք այդ

---

*) Արհամարհանքի ու ատելութեան արտայայտութիւն. գեաւուրը նշանակում է՝ անհաւատ, պիղծ, զզուելի։

**) Վանում ես գտնւում էի չորրորդ զօրաբանակի, իննսուն և եօթ երրորդ ալայու (գունդ) առաջին թապուրի (բատալիոն) երկրորդ բէօլուկը (ռոտ)։ Վ. Ց.

զզուելի չորպան, բայց մեր Թուրք սպաներն ու չաուշները զանազան անտանելի տանջանքներից զատ մերթ ընդ մերթ մեզ խրախուսում էին փախչելու՝ Թերեւս իրենց Թաքուն չարամտութեամբ հայ ժողովրդին ամբաստանելու բացայայտ պատրուակներ ստեղծելու համար։ Տեսնելով զօրահանութեան անկանոնութիւնը և մեր հրամանատարների գիտումնաւոր տանջանքների անտանելիութիւնը, ստիպուեցայ փախչել։ Եւ եթէ եղած են հայ փախստական զինուորներ, բոլորն էլ ինձանից աւելի մահացուցիչ պայմաններում միայն ստիպուած։

*(Շարունակելի)* Տ. Շահբազ

## ԳԵՐՄԱՆԱՑԻ «ԱՍՊԵՏՆԵՐԸ»

—

«Temps» լրագիրը հաղորդում է, որ ոմն ամերիկահայ Բեջիչեանը Նիւ-Դժերզ չտատում ստացել է իր մի ծանօթ Թիւրքից նամակ, որի մէջ վերջինս պատմում է, որ հայոց կոտորածից առաջ Թիւրք և գերմանացի սպաները պայման էին կապել, որով վերջինները ստանում էին կողոպտուած իրերի $^1/_3$-ը և իրաւունք ունէին գնելու հայ ժառանգահաս աղջիկները ամենաէժան գներով սկսած 1 մարկից ամեն մի «հատը»։

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԸ ԵՒ ՀԱՅԵՐԸ

—

ՖՐԱՆՍԻԱ.—Անցեալ ամսի 10-ին «Ֆրանկ-օտարազգեայ բարեկամութեան» ընկերութիւնը մի խնջոյք տուեց ի պատիւ Պարիզում գտնուած Ռուսաց պատգամաւորների։ Կենաց ճառեր արտասանեցին Պոլ Դեշանէլ, Պենլեվէ, Միլիւկով, Պրոտոպոպով և ուրիշները։

Խօսք առաւ Անատոլ Ֆրանսը և խօսեց այսպէս.

«Ես բարձրացայ Ֆրանսիայի յարգանքը յայտնելու Ռուսաստանին։ Բայց վերջինիս կատարած սքանչելի հերոսութեան ու անծայր զոհաբերութեան առաջ չեմ կարող չարտայայտել ողջ Ֆրանսիայի հետ միասին իմ զարմանքն ու հիացմունքը։

«Ռուսաստանը դրել է իր ուժն ու հանճարը մի անծանօթ բարձրութեան վրայ, որին չէ արժանացել մինչև այժմ ոչ մի ժողովուրդ։ Գիտէին, որ Ռուսաստանը տիրապետում է նիւթական բարոյական հարստութիւնների անսպառ գանձերի. գիտէին, որ ամենավսեմ անձնուիրութիւնը յատուկ է Ռուսաստանի ժողովրդին և նրա զինուորներին։

«Բայց այն, ինչ զարմացրեց ամբողջ աշխարհը, այդ նրա մեծ ու ծայրագոյն ինքնագիտակցութիւնն է գերմանական ոճիրի առաջ. այդ նրա միահամուռ վճռականութիւնն է, որով նա նուիրուեց ամբողջ հոգով և մարմնով ազատութեան ու ճշմարտութեան դատին։

«Այժմ Գերմանիայի դէմ ողջ Ռուսաստանը մի սիրտ է միայն, մի վսեմ հսկայի սիրտ իր զարհուրելի բաբախումով հանդերձ, որ իր յորդառատ արիւնով ներկուեց, որպէս զի ազատի Եւրոպան կործանումից և անպատուած մարդկութեան ու բռնակալած ճշմարտութեան վրէժը լուծի։

«Մարդկութիւնը ցնծաց, տեսնելով Ռուսաստանի ազատաբեր զէնքը Էրզրումում և Տրապիզոնում։ Մեր սրտերում փայփայել ենք այն յոյսը, որ Ռուսաստանը, Հայաստանի նուաճումը վերջացնելուց յետոյ, կըտայ մարտիրոս ժողովրդին կեանք և ազատութիւն։ Նա արդէն իրան պաշտպան է յայտարարել Հայկական դատի։ Այժմ Հայաստանը սպասում է նրանից կեանք, օրէնքներ և ազատութիւն, որոնց նա արժանի է, Պարոններ»։

Ա. Ֆրանսից յետոյ խօսաց Պետական Դումայի անդամ Միլիւկովը, որ ի միջի այլոց ասաց, թէ Ռուսաստանը նպատակ է դրել տալ ինքնավարութիւն վերաշինած Լեհաստանին և մարդասպանների ճանկերից ազատուած Հայաստանին։

ԻՏԱԼԻԱ.—Իտալիայում գտնւում է ներկայումս 7,000 հայ, որոնց մի մասը պատսպարուել է այնտեղ, ազատուելով հայկական ջարդերից։ Ստեղծուել է մի ամբողջ հասարակական շարժում ի նպաստ հայերի։ Տուրինում հիմնուել է իտալերէն լեզուով «Արմենիա» անունով մի թերթ, որ նպատակ է դրել ծանօթացնել իտալացիներին հայ իրականութիւնը։

Իտալիայի ամենանշանաւոր հայկական գաղութները գտնւում են Նէապոլում, Գինոսում, Միլանում, Տուրինում և Հռովմում։

ԱՄԵՐԻԿԱ. — Ինչպէս Անգլիայում, նոյնպէս և Ամերիկայում, հայկական հարցով սկսել են զբաղուել հասարակութեան աւելի ու աւելի լայն խաւեր։

Նիւ-Եօրկում լոյս է տեսնում անգլիերէն լեզուով «Նոր-Արմենիա» թերթ, որ զբաղւում է յատկապէս հայոց հարցով։ Այդ թերթի ասելով, հայանպաստ յանձնաժողովների գումարները օրըստօրէ շարունակում են աճել։ Օր. «Հայերին օգնող Ամերիկական կոմիտէի» հանգանակած գումարը հասնում է 252,749 դոլարի։ Հայ գաղթականների օգնութեան յատկացրած Հայ-Յեղափոխականների ֆոնդը հասնում 158,000 դոլարի, իսկ հայ Ազգային կոմիտէի ֆոնդը—45,000-ի։

# Գեղարուեստ

## ՀԱՐԱՒԻ ԽՆԴԻՐԸ ՀԻՒՍԻՍԻՑ

—

Քոյրերիս մէջ միշտ սգազգեաց, ինձ նման տխուր չկայ,
Դժոխքումն էլ իմ ունեցած կրակիս պէս հուր չկայ.
Ծարաւ պապակ այրւում եմ, ոչ մի կաթիլ ջուր չկայ,
Սպասում եմ այցելութեան, ոչ մի տեղից լուր չկայ։

Իմ տարիքս անցնում են շուտ, գլորւում են հանապազ,
Սև իմ յոյսս, իմ փափագս կը համարուի միշտ երազ.
Որտեղ լսեմ ձայն ու շարժում, կը վազեմ այնտեղ վազ,
Սպասում եմ այցելութեան, ոչ մի տեղից լուր չկայ։

Զէ՛, քո խղճալի Հարաւն եմ, ինձի օգնէ, քաջ Հիւսիս.
Քեզ եմ տուել իմ Ախուրեան, իմ անառիկ մեծ Մասիս.
Ե՞րբ կըլսեմ աւետեաց լուր, ուրախութեան աւետիս.
Սպասում եմ այցելութեան, ոչ մի տեղից լուր չկայ։

+ Ջիւանի

## ՓԻՂ ԵՒ ԱՌԻՒԾ

(Երկրորդ պատմուածքը) *)

—

1

Ինչպէս հետապնդուած այծեամներ, որ կատաղի գայլերի վոհմակների դէմ ապաստան են որոնում ապառաժոտ կողերի և սեպաւոր բարձունքների վրայ, —

Ինչպէս յետին Թռչնորդներ հերոսաբար մաքառողների, որ կործանարար փոթորկից խուսափած՝ կուտակւում են որևէ ժայռի կատարին ու փրկութեան յոյսը չունին իրենց կրծքի տակ,—

Եւ ինչպէս լքուած նաւաբեկեալներ, որ զարհուրելի ալեկո-

*) Առաջին պատմուածքը տես «Համբաւաբեր» № 15 և 16.

ծուԹիւնից ճողոպրած՝ նետւում են ծովափնեայ ամայուԹեանը վրայ—

Այնպէս այդ մի բուռ փախստականները ընկրկելով հալածողների մեծ ուժի առաջ, քայլ առ քայլ կռուել էին գրոհների դէմ, գնացել մագլցել էին իրենց լեռների ամենաբարձր կատարներն ի վեր ու ապաւէն որոնել մի սարահարԹի վրայ, ուր հնամեայ սրբատեղիի միացորդները սերունդից-սերունդ իրենց մամռոտ պատերն էին ցցում կիսախարխուլ և մենաւորիկ...

(Այդպէս անա սկսեց գաւառացի ուսուցիչը այն պատմուԹիւնը, որ չը գիտեմ ուրտեղից էր ձեռք բերել և այժմ հակագրում էր իմ պատմած փոքր գրոյցին)։

...Կին, երեխայ, (շարունակեց նա) ունեցած պաշարն ու ապրմամԹերքը, տաժանելի ճիգերով և յուսահատ վճռականուԹեամբ, քարշ էին տուել իրենց հետ ժայռից-ժայռ, խուԹից-խուԹ։

Շատ չէր ունեցածները։ Ի՞նչ կարող էին տանել ուղղորդաձև կողերը մագլցելու դատապարտուած յիսունի չափ հալածականներ։ Իւրաքանչիւրը այնքան, որքան գտել և կարողացել էր կրել իր վրայ։ Մի քանի տասնեակ փամփուշտ, մի քանի բուռը վառօդ ու գնդակ, նոր կամ հին մի հրացան, ապա և պաղ զէնքեր։

Այդպէս՝ անցել-կտրել էին նրանք անդունդ ու ծերպ, մագլցել էին ոլորապտոյտ շաւիղներ և անելանելի ապալերներ ու դերբուկներ... փշալից մացառները Թագստոց էին շինել, ամեն քար կռուան, ելել էին՝ ելել, կատարի տափարակը հասել և մառուխ մօտ շունչ առել։

Վերջին կայանն էր այն։ Այնուհետև երկինքն էր միայն։ Բարձր, պատկառելի մի անհունուԹիւն, որի խորուԹեան մէջ սաւառնող Աստծոյ կիսափուլ տաճարն էր այժմ նրանց միակ ապաւէնը։ Նրա սեղանի առաջն էին եկել ապաստան որոնելու՝ յոյսի և փրկուԹեան մի վերջին սպասումով։

Ոչ ոք չէր տրտնջացել։ ՅուսաբեկուԹեան ոչ մի ճիչ։ Ոչ խսկ արտասուք։ Ցամաքել էր այն։ Իրար սիրտ էին տուել, մանուկ ու կին տեղաւորել էին սրբավայրի մէջ, ապա, հրացաններն նորէն ձեռք առել և գնացել՝ սարահարԹը ամրացնելու հետապնդող վոհմակների դէմ։

Ցիրաւի, այնպիսի չչմեցուցիչ կորուստներ էին պատճառել Թշնամու շարքերի մէջ, մի բուռը այդ առիւծներից՝ յարձակուողները այնքան զօրեղ հարուածներ էին ստացել, որ մոլեգնած՝ վճռել էին հետապնդել ըմբոստներին ու իրենց Թիկունքին սպառնացող մշտական վտանգը վերացնել մէջ տեղից։

Գիտէին այդ փախստականները։ Գիտէին, որ Թշնամին հետևելու էր իրենց՝ կրկնապատկուած Թուով և ուժով, պաշարելու էր բարձունքը, գրոհներով ելնելու մինչև վերջին քերծը, կամ Թէ սովի էր մատնելու այնտեղ ապաստանողներին։

Գիտէին սակայն և այն, որ պէտք էր մեռցնել կամ մեռնել։ Մեռցնել՝ ոչ Թէ փոքր դանդաղկոտուԹեամբ, մեռնել՝ ոչ Թէ անճարակօրէն իրենց կողերը դէմ տուած Թշնամու գնդակներին— այլ առիւծի պէս ոստնել յարձակուողների վրայ, որոտընդոստ մռնչիւնները արձագանքելու յանձնել շրջակայ լեռներին, ճանկերի մէն-մի հարուածի տակ մի քանի ողնասիւն փշրել... ապա Թէ իրենց դիակները տարածել՝ ոչ քարէ անկողնի, այլ Թշնամու տասնեակ ընկածների կուրծքի վրայ։ Նրանց վրայ միայն։ Երբէք նրանց տակ։ Այդպէս մեռնել!...

Երեկոյեան դէմ փոքրիկ սարահարԹը ամրացրած էր մարտկոցի պէս։ Շաւիղների մուտքի առաջ գլորել՝ պատնէշ էին կազմել խոշոր ժայռերով դիրքեր։ ՄատչելիուԹեան հնարաւոր ամեն ելք գոցել էին քարակոյտերով։ Որոշուել էին դիրքերը և նրանց վրայ պահակ գրուել կանայք, հրացան ի բռին...

Ցխուն-վաԹսուն հոգի հաղիւ կային։ Լայնածաւալ չէն գաւառի յետին միացորդները։ Կիսով չափ կանայք էին ու մանուկներ։ Ո՛չ մի ծերունի կամ պառաւ։ Մնացել էին նրանք վարը։ Իրենք, ծերերն էին այդպէս պահանջել։ Մի քանի տարի աւելի կամ պակաս կեանքը արժէք չունէր։ Բեռ դառնալ չէին կամեցել։

Ու միացել էին։ Մնացել՝ և մինչև յետինը խողխողուել։ Գայլերի գործելակերպն էր դա։—Ո՛չ մի շունչ անցած տեղերից...

—

## 2

Հետղհետէ մուԹը ծանրացաւ հովիտների վրայ։ Իջաւ դանդաղօրէն ու սև ծածկոցի պէս իր մէջ պարուրեց ամեն ինչ։ Կատարներից վար սփռւում էր այլևս խաւար մի տարածուԹիւն, որ երբեմնակի ծակծկւում էր չարաշուք եփուն լոյսերով—անկայծող ու ոստոստուն։

ՍարահարԹի վրայ խաւարը Թանձր չեղաւ։ Աստեղալից երկնքի կաԹնաշող լոյսը ողողում էր բարձունքները։ Շամանդաղի մի քօղ միայն կար պարզուած ժայռերի գլխին։ Ստուերամած խորշերն ու կողերը սակայն սևաԹոյր էին դառնում և մռայլ։ Նրանց ցցուածքները կնճռոտ տեսք առած՝ իրար էին սեղմուել կարծես երկիւղալից և աւելի ևս չեշտել իրենց չոր կմախքները։

ՄուԹի Թանձրանալու հետ՝ ցրտաշունչ քամին էլ սկսեց սուրալ ապառաժների կողերին, բաղխել ժայռերն ու քարակոյտերը և անընդհատ գահավիժումներով իրար խառնել խորքի մացառուտները։

Այլևս ոչինչ չէր երևում տասը քայլ խորուԹեան մէջ։ ԱնԹափանցելի մի տարածուԹիւն միայն, որի ալքերից մէկ-մէկ դէպի վեր էին նետւում անորոշ, սուր կոնչիւններ, անարձագանք չոր Թնդիւն, կամ որևէ խուլ, անդնդախոր աղաղակ։

Պարզ էր, որ այնտեղ, աղջամուղջի ծալքերում, ինչ-որ շարժումներ էին տեղի ունենում հապճեպով։ Ոչ ոք կասկածեց որ հալածողները ոտքի վրայ էին և գիշերուայ մԹուԹիւնից օգտուելով՝ դէպի վեր էին առաջանում։

Ու հալածականները, ըմբռնելով րոպէի լրջուԹիւնը, խորհուրդի նստեցին մառուխ առաջ և ընտրեցին մի առաջնորդ։

Փորձառու մի պատերազմիկ էր այն, որ վէրքերի շատ սպիներ էր շահել ազատագրուԹեան երկարատև կռիւների մէջ ու այժմ որոշել էր մի վերջին լայն շարժումով կնքել իր հալածական կեանքը. որ Թէև շարունակ ծանր օրեր էր ապրել, բայց արշալոյսի մարմաջը դեռ չէր կորցրել իր կրծքի տակ։

Ընտրելուց յետոյ գլխաւորին, ձեռնարկուեց իմանալու՝ վարը տեղի ունեցող շարժումների ուղղուԹիւնը, Թշնամու յառաջացման ձևերն ու ճանապարհները, այլ և նրա գործի հանած ուժերը։

Այդ նպատակով էր, որ հետախուզողներ ուղարկուեցին դանազան կողմերից դէպի խորքերը։

Լեռնցուն յատուկ զգուշաւորուԹեամբ, ժայռերի ու մացառների միջից սպրդելով ու սողոսկելով, հետախուզողները լրտեսեցին, գնեցին և երկրորդ օրը լուսաբացին, իրար ետևից, տափարակը վերադարձան։

Պաշարուած էին ամեն կողմից, մեծ ուժերով։ Ընկրկելու ոչ մի միջոց։ Արշաւախմբերը իրենց հետքերի վրայով բարձրանում էին արդէն։ Մի միակ ելք եԹէ կար—հեռաւոր ու անյայտ հորիզոնն էր դէպի աւելի մշուշոտ բարձրուԹիւնները։ Շատ հեռու, չափազանց անծանօԹ և անհիւրընկալ անյայտուԹիւններ։

ՕգնուԹեան յոյս չէր մնացել ոչ մի տեղից։ Լեռնալանջերն ամբողջ ամայացրած էին՝ ամեն ինչ աւերող ուրագանի մոլեգնուԹեամբ։ Ծուխի սիւնակներ էին գալարւում բոլոր կողմերից. մօտ, հեռու, կողերի վրայ, հովիտներում ու դաշտերում։

Ընդհանուր մի աւերածուԹիւն էր այն։ Հրդեհը լափում էր ամբողջ երկիրը։ Գուցէ միայն իրենք էին, որ մնացել էին ողջ։ Մի բուռը այծեամներ, որոնք խելայեղ ոստումով անցել էին գայլերի վոհմակների գլխի վրայից և եկել էին կառչելու ամպածրար այդ բարձունքներին...

Մնում էր ուրեմն իւրաքանչիւր քայլը պաշտպանելով մեռնել։ Բայց կանայք, մանուկները։ Թողնել Թշնամու աղտոտ ճի-

*քաններին։ Իրենց ձեռքերովը կտորե՛լ ուրեմն, ժայռերից վա՛ր գլորել…*

*Ոչ ոք չը խօսեց, երբ հետախուզողները պարզեցին այդ ամենը՝ գլխաւորի և ընկերների առաջ։*

*Թարասուզուած դառն մտքերի մէջ և մռայլ, արևածագի շառաւիղների տակ նստած քարերի վրայ՝ անձայն ականջ դրին ամենքը։ Ոչ ո՛ք հառաչեց։ Իրար նայեցին միայն, ապա, միասնաբար, ներքին մի մղումից կարծես դրդուած՝ ոտքի ելան, դէպի արևելք դառնալով խաչակնքեցին ու հրացաններին առին։*

*Այնուհետև արագ կատարուեց ամեն ինչ։ Կին ու մանուկ ժողովեցին, գլխաւորի հրամանով վեց հոգի առած՝ գնացին դէպի անորոշութիւնը։ Գուցէ ելք լինէր այն կողմը։ Եթէ ոչ՝ աւելի լաւ էր թող մեռնէին ամայութեան մէջ անօթութիւնից ու յոգնածութիւնից։*

*Երեկոյեան դէմ թշնամին իր խարոյկներն էր պսպղացնում բարձունքին մօտիկ սարերի վրայ։ Երևում էին նրանց բոցեղէն լեզուները՝ թանձրացող սևութեան մէջ։ Յետոյ, սարահարթին հասան խուլ որոտներ ու ճայթիւն։ Լեռնային թնդանօթների ռումբերն էին և հրացանների ձայնը։ Մօտենում էին։ Եղան նոյնիսկ մարտկոցի և դիրքի քարերը ջախջախող ռումբեր։ Նրանցից մէկը պայթեց՝ ամրութեանը իբր հիմք ծառայող հսկայական ապառաժի տակ. պոռեց, փշրտեց ժայռեր, ցնցեց վիթխարի զանգուածը և պահ մի կարծել տուեց մինչև անգամ, թէ ահա պիտի փլէր այն։*

*Կռիւը սկսում էր կատաղի, անխնայ և անհաւասար։ Դիրքերից կրակի խուրձեր սլացան դէպի վար՝ թշնամու այն խմբերի մէջ, որոնք աւելի յանդուգն՝ մագլցելու էին գալիս դէպի սարահարթը։*

*Ու երբ խաւարը նորից թանձրանում էր շուրջը, երբ ցրտաշունչ քամին սուրալով հեծեծում էր ծործորների մէջ և ժայռերի արանքներում—ռումբերն ու գնդակները սկսում էին մարտկոցը աւերել, նրա հիմքը խախտել լրջօրէն և դիրքերի քարակոյտերն ու պատնէշները փլեցնել։*

*Մինչ այդ՝ խորքում մեծանում էր ահեղ մի մռնչիւն՝ ծովի փոթորկատանջ ալիքների որոտման պէս մշտալար և աճեցուն։ Իսկ մութը, այն ծանրացող աղջամուղջը ապա!… կարծես աստղերն անգամ աղօտացրել էին իրենց լոյսը և մեծացրել ստուերները։ Ժայռ, քար ու մացառ ահագին շուք էին սփռում տափարակի վրայ, սևաթոյր տարածութեամբը իրար ձուլում… Մատուռը դողում էր ու սարսում և սառեցնող քամին իրար էր զարնում նրա գլխին ու պատերի վրայ դիզացած հնամեայ, գխախոխ վարսերը…*

—

3

*Ոչ մի հառաչ։ Ընկնողը ճիչ չունէր։ Կծկւում էր մի քարի տակ, խեղդում իր հծծիւնները և մեռնում լռելեայն։ Կրակողները չէին աղաղակում վարի գայլերի պէս։ Շրթունքներին պրկած՝ մտայափշտակութեան մէջ հրացանի բունը ջղաձգօրէն սեղմած և հայեացքը խորքից ելնող թշնամու խմբերին յառած՝ գնդակահարում էին։*

*Եթէ գնդակն էր վերջանում և վառօդը սպառում, հրացաններն ու մէջքերնին դէմ էին տալիս խոշոր ժայռերի, մկանունքները լարում էին և դղրդիւնով դէպի վար գլորում յարձակուողների վրայ։*

*Այդպէս էր որ շարունակուեց կռիւը մինչև լուսաբաց անընդհատ, առանց շունչ առնելու։*

*Ամենքի ակնարկը սակայն անձկօրէն դառնում էր յաճախ դէպի արևելք՝ լոյսի շառաւիղների առաջին շողքին սպասելով, մի վերջին անգամ ևս կարծես լոյսով ապրելու և լոյսի մէջ էլ ընկնելու։ Թւում էր թէ լոյսի հետ պիտի ծագէր փրկութեան մի նշոյլ, մխիթարիչ մի ճառագայթ։ Թելայեղ յոյս էր այն, յայտնի չէ ինչից առաջ եկած, ինչ հիմք ունեցող—բայց յոյս էր… Լոյս, միմիայն լոյս! Մեռնել արևի ողողման տակ և ո՛չ խաւարի սև քողի մէջ անյետանալով։ Մեռնել՝ ակնարկը անհունութեան մէջ մոլորուն, բայց ո՛չ սուկումով լի կուրութեան դատապարտուած, առանց վերջին անգամ տեսնելու հայրենի լեռների ստուերագծերն ու գեղագարդ հովիտների մշուշոտ տարածութիւնը…*

*Լուսադէմի մօտ կռուողներից հազիւ կէսը միայն կանգուն էր մնացել։ Զարնուած ու մեռած՝ ընկել էին քարերի մէջ, իրենց դիրքերի մօտ՝ վերջին փամփուշտը պարպելուց, վերջին ժայռը վար գլորելուց յետոյ։*

*Մնում էին հազիւ մի տասնեակ դեռ չը վիրաւորուած մարտիկներ, որոնք յոգնած և ուժասպառ՝ ոչ իսկ գնդակ ունէին արձակելու։*

*Վերջացել էր ամեն ինչ. փամփուշտ, գնդակ, վառօդ։ Պաղ զէնքերը միայն կային։ Անօգուտ շեղբեր՝ ներքևից սուրացող գնդակների և մռնչող ռումբերի դիմաց։*

*Ոչ ոք սակայն մտածեց ընկրկելու, ոչ ո՛ք՝ փախչելու մասին։ Եւ դէպի ո՞ւր փախչել։ Դէպի իրենց կանանց ու մանուկների կո՞ղմը։ Վտանգե՛լ նրանց խուսափումը, երևա՛ն հանել նրանց փախուստն ու գնացած ճանապարհը։*

*Ո՛չ, այլևս պէտք էր մեռնել։ Մեռնել՝ հնար եղածին չափ ո՛ւշ յանձնելով սարահարթը։*

*Աղօթարանին մնացել էին 5-6 հոգի միայն։ Գլխաւորը և մի քանի ճկուն, հուժկու, ամենից աւելի դիմացկուն կռուողներ։*

*Վերջին գնդակներն ու վառօդն էին գործածում այլևս, որից յետոյ. . . . . . . . . . . . .*

—

*Այստեղ ուսուցիչը կանգ առաւ անակնկալ կերպով, որովհետև Կովկասահայը, որ մինչև այդ ծնօտը իր գաւազանին կռթնեցրած՝ լսում էր—յանկարծ գլուխը բարձրացրեց, ոտքի ելաւ ու ասաց.*

*—Մնացածը հասկանալի է…*

*«Եւ այնուհետև գայլերը ընկան այծերի վրայ ու կերան նրանց»… Ճիշտ «Սեղինի այծիկի» նման… Գիտէք Դոդէի պատմութիւնը։ Սեգինի այծիկը փախչում է կաշկանդումից դէպի լեռը, կռիւ է տալիս մինչև արշալոյս գայլի դէմ և արշալոյսին… գայլը ընկնում է այծիկի վրայ ու յօշոտում նրան». . Այստեղ էլ նոյնն է։ Մէկ այծի փոխարէն՝ մի քանիսը… Եւ այնուամենայնիւ գայլերը ուտում են նրանց…*

*Ուսուցիչը պահ մի լուռ՝ լսեց նրան։ Յետոյ, երբ վերջացրել էր, գայրոյթից գունատուած բռնեց նրա թևից, ցնցեց ուժգնութեամբ ու գոչեց.*

*—Իսկ ո՞վ ձեզ ասաց, որ մինչև արշալոյսի բացուելը՝ գայլերի դէմ կռիւ տուող այծերը չեն կարող մեռնել… ոչ թէ այծերի, այլ առիւծների նման… Այո, առիւծների… Լսեցէք ուրեմն։—*

*…«Լուսաբացին սարահարթի վրայ գայլերի վոհմակների դէմ կռուելու մնացել էին միմիայն 5-6 կտրիճներ, մինչդեռ խորքից, տափարակի եզրերում, երևում էին արդէն տասնեակ ժանդ ու կատաղի դէմքեր։*

*Վերջացել էր, իրաւ է, փամփուշտ, վառօդ ու գնդակ։ Կըտրուել էր, իրաւ է, կռուելու ամեն միջոց, սակայն մեռնելու դատապարտուածները չը կամեցա՛ն մեռնել հասարակ, այնպիսի մահով, որ թշնամու ուրախութիւնն է կազմում։ Ընդհակառակն, վճռեցին մի այնպիսի փառահեղ գերեզման կառուցանել իրենց համար, մի այնպիսի շիրիմ, որի տեսքը միայն երկար ժամանակ սարսուռ ազդէր գայլային վոհմակներին՝ սերունդից-սերունդ։*

*Ցած նետեցին նրանք այլևս անօգուտ դարձած իրենց հրացանները, միահամուռ ուժով մէջքերնին դէմ տուին մարտկոցի խարխլուած վիթխարի ապառաժին, գերմարդկային թափով լա-*

բեցին մկանունքները, խախտեցին զանգուածը յենարանից և... ահաւոր դղրդիւնով շուռ տուին դէպի անդունդը։

Քարաժայռերի, փոշու, աղաղակների և ճիչերի մի բուռն հոսանք՝ գլորուող ու արշաւող որոտման պէս երկարաձիգ արձագանքով, կորղուած լեռների այն բարձունքից, թաւալումներով սրացաւ դէպի խորքերը, սրբեց ճանապարհի վրայ ամեն ինչ, իրար խառնեց մացառ ու ժայռ, թուփ ու քար և գնաց պայթելու այնպիսի ահաւոր ցնցումներով, որ երկար ժամանակ դեռ սարսում էր օդը հովիտների և ծործորների մէջ...

Այդպէս էր ահա, որ մեռնում էին բարձունքների կորիւնները՝ յաղթական ճիչը բերաններին, թշնամիների դիակներից կազմուած անկողնի վրայ, հսկային վայել վիթխարի ապառաժը իբր տապանաքար։

Ու նրանց շիրիմների վրայ—եթէ չի գրուել մինչև այժմ— անշուշտ երբ և իցէ կը գրուի ահա թէ ինչպիսի խօսքեր.—

«Այստեղ են այն առիւծները, որոնք գիտցան մեռնել ազատութեան համար շքեղօրէն»...

Եթէ գիտէք աւելի յարմար մի տապանագիր,—ասացէք։

Վ. Փափազեան

# Մատենախօսութիւն

**Գ. Էդիլեան.** *Սեդրաք Մանդինեան, Թիֆլիս, 1916։ 52 եր., գինն է 20 կ.*

Էդիլեանի այս գրքոյկը մի ամփոփ, սիրուն մենագրութիւն—մոնոգրաֆիա է Ս. Մանդինեանի մանկավարժական տեսականի և գործնականի մասին։ Հեղինակը նախ տալիս է մեր ականաւոր մանկավարժի համառօտ կենսագրութիւնը. ապա նա հակիրճ, բայց լրիւ կերպով ներկայացնում է նրա հայեացքները ազգային, կրօնական, անհատական և ընկերական կրթութեան և դպրոցական գործի, սրա նպատակի, նրա մանկավարժական գործունէութեան, նրա տեսական հայեացքների աղբիւրների (Հերբարդ-Ցիլլեր և Բէն) մասին։ Վերջում գնահատութիւն է կատարում և որոշակի կերպով երևան հանում Ս. Մանդինեանի մանկավարժական գործունէութեան դրական և բացասական կողմերը։ Գրքոյկին կցուած է նաև Մանդինեանի տպագրուած և անտիպ գրուածքների ցուցակը, որից երևում է, որ մեր առաջին մեծ և բեղմնաւոր մանկավարժը շատ արժէքաւոր գործեր ունի, որոնք գուցէ ընդմիշտ դատապարտուած են ձեռագիր էլ մնալու։

Ամեն կողմից այս հետաքրքրական գրքոյկը միայն յանձնարարել կարող ենք հայ ընթերցողներին և առանձնապէս հայ մանկավարժութեան զարգացմամբ նախանձախնդիրներին։

Վ. Խորէնի

* * *

**Шарти.** Армянскіе поэты. Выпускъ 1. 1916 г. ц. 40 к.

Երիտասարդ հայ բանաստեղծի այս թարգմանութիւնները ամենայաջողուածներից են։ Շարտին ունի մի առաւելութիւն, որ միւս թարգմանիչներին պակասում է։ Երևում է, որ նա լաւ գիտէ հայերէն, թարգմանում է անմիջապէս բնագրից՝ թափանցելով հայ լեզուի ոգին, զգալով նրա համն ու հոտը։ Գուցէ միւս յայտնի ռուս բանաստեղծները արտաքուստ աւելի արուեստաւոր և մշակուած են թարգմանում, բայց այդ կատարւում է ի վնաս ժողովրդական-ազգային ոգու։ Նրանց թարգմանած Սայաթ-Նովան այլես մեր Ս.-Նովան չէ, այլ մի եւրոպական նորելուկ (մոդեռն) բանաստեղծ։ Այդպէս չեն Շարտու թարգմանութիւնները, այլ ազատ են և հարազատ. օր.՝ նրա «Ծիծեռնակը» մինչև այժմ եղած թարգմանութիւններից ամենայաջողը, հարազատ ու գեղեցիկն է։ Շարտին առանձին ուշադրութիւն է դարձրել Քր. Թադէոսեանի վրայ, որը մեր հասարակութեան մէջ միայն իր «Երբ ալեկոծ»-ով է յայտնի։ Թադէոսեանից նա թարգմանել է 14 ոտանաւոր, Ս.-Նովայից 11, Շ.-Կուրղինեանից 2, Յ. Յակովբեանից 2, Րաֆֆուց 1, Դողոխեանից 1։ Ցանկալի է, որ միւս մասերն էլ շուտով լոյս տեսնէին։

Վ. Խորէնի

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի   Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1.   Дозволено военной ценз.